ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԾԷ.

# ՏԵՍԻԼ Ս. ՍԱՀԱԿԱՅ

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ–ՊԱՏՄԱԿԱՆ ՔՆՆՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1948

# DIE VISION DES HL. SAHAK I.

## EINE LITERAR-HISTORISCHE UNTERSUCHUNG

VON

P. NERSES AKINIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1948

# ՏԵՍԻԼ Ս. ՍԱՀԱԿԱՅ

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ–ՊԱՏՄԱԿԱՆ ՔՆՆՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**
Մխիթ. Ուխտէն



**ՎԻԵՆՆԱ**
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1948

# ԱԶԴ

Փորձ մըն է առաջիկայ քննութիւնս, որոշելու Ս. Սահակի անուամբ մեզի հասած Տեսիլքի ժամանակը։

Թէ անվաւերական գրութիւն մ'ունէինք մեր առջեւ, ընդունուած էր արդէն. վէճի առարկայ էր միայն անոր գրութեան ժամանակը։ Մանր քննութեան ենթարկելով այս հարցը, յանգեցայ այն եզրակացութեան, թէ երբեք հանգրուաններով հասած է գրուածքս այժմեան վիճակի, ոչ ուշ քան Ը. դարու սկիզբը։

Քննութիւնս լոյս տեսած էր «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ (ՀԱ, 1937, էջ 48—87)։ Առանձին պրակով հրապարակ կ'ելլէ այն, պարագաներու բերմամբ, այժմ միայն։ Կարեւոր համարեցայ արտատպութեանս կցել մանր Ուղղելիքներ եւ մէկ քանի Յաւելուածներ, յատկապէս Նախնեաց վկայութիւններ, ի լրումն արդէն յիշուածներու։

Վիեննա, 21 Մայիս 1948։

Հ. Ն. Ա.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Էջ



---

# ՔՆՆՈՒԹԻՒՆ ՏԵՍԼԵԱՆ Ս. ՍԱՀԱԿԱՅ

1. Հասած է մեզի Տեսիլք մը, որ վերագրուած է Մեծին Սահակայ, Հայոց հայրապետի: Տեսիլքիս բնագիրը ծանօթ է հրապարակի վրայ: Անոր յառաջագայութեան, հեղինակի եւ գրութեան ժամանակի մասին կատարուած են քննութիւններ. բայց յարուցուած հարցերը չեն գտած լրիւ իրենց լուծումը:

Հարցերը միւսանգամ քննութեան ենթարկել յառաջ, որպէս զի իրաց մինչեւ այսօր առած ընթացքը պայծառ ներկայացուած ըլլամ, կարեւոր կը համարիմ դիւրընկալ շրջագծի մէջ պատկերացնել Տեսիլքիս շուրջը ի սկզբանէ անտի գոյացած գրականութիւնը. եւ նախ իսկ Բնագրին աւանդութիւնը, նախնեաց վկայութիւններն եւ նոր եւ նորագոյն շրջաններուն անոր շուրջը յայտնուած տեսութիւնները:

Շատ քիչերը, դժբախտաբար, լրջօրէն եւ առարկայական զննութեամբ մերձեցած են Տեսիլքիս քննութեան: Յաճախ անհիմն ենթադրութիւններ հիմ ծառայած են քննադատական կառուցուածքներու. յայտնուած են

*երբեմն նաեւ յանդուգն հաւակնութեամբ տեսութիւններ, եւ զարմանալիօրէն այնպիսիներէ, որոնք առ հասարակ իբրեւ աւանդամոլ քաջանուն եղած են:*

2. Սրբոյն Սահակայ Տեսիլքին բնագիրը *աւանդուած է մեզի Ղազար Փարպեցւոյ Պատմութեան սկիզբը գրուած Ա. Դրուագին մէջ, որ կը բաղկանայ երեք մասէ.*

ա. *Յառաջաբանական մասը.*
բ. *Տեսիլն եւ Մեկնութիւնը.*
գ. *Վերջաբան:*

*Մուտքին մէջ կը պատմուի, թէ Վռամ Ե.ի օրով, Սահակ կաթողիկոս գահընկէց եղած է եւ աթոռը յանձնուած Սուրմակ, ապա Բրքիշոյ եւ հուսկ յետոյ Շահակ ասորի (Մանազկերտցի, Աղբիանոսեան տնէ) անհանճար կաթողիկոսներու: Վերջնոյս մահէն ետքը հայ նախարարները խորհուրդի կը նստին եւ կ'որոշեն դիմել Սահակ գահընկէց կաթողիկոսին եւ խնդրել, որ՝ մոռացութեան տալով իրեն դէմ եղած անիրաւութիւնը յանձն առնէ միւսանգամ ձեռք առնել Աթոռին վարչութիւնը: Սահակ կը մերժէ նախարարներու առաջարկը. այս առթիւ կը պատմէ անոնց Տեսիլք մը, զոր նա տեսած էր «յառաջ քան զձեռնադրելն յեպիսկոպոսութիւն», ուստի մինչդեռ երէց էր:*

*Աւագ հինգշաբթի օր, երեկոյեան դէմ կը գտնուէր, կ'ըսէ, Սահակ Վաղարշապատի Կաթողիկէ եկեղեցւոյ մէջ, բազմած «մերձ*

տը սեղանն Աստուծոյ»․ եւ ահա կը յայտնուի ինծ «յանուրջս»՝ «գիտելութիւն» ապագայ ժամանակի: Եւ կը պատմէ Տեսիլքը:

Տեսիլքս ընդունած է Սահակ իբրեւ պատասխան իր ամենօրեայ խնդրուածքին, որով կը հայցէր Աստուծմէ «շնորհել ինծ արու որդի, որպէս եւ <շնորհեալ էր> նախնեացն իմոց՝ որ յառաջ քան զիս էին ամուսնացեալք յայսպիսի որդէծնութեան»:

Տեսիլքը, զոր տեսած էր Սահակ, մութ էր բառ իմաստին: Եւ ահա կ՚երեւայ իրեն Աստուծոյ հրեշտակը եւ կը բացատրէ մի առ մի Տեսլեան խորհրդաւոր միտքը, զոր կարելի է ամփոփել այսպէս․ Սահակ թէպէտ արու զաւակ պիտի չունենայ, բայց պիտի յառնեն իր ցեղէն (աղջկան գծէն) շառաւիղներ, որոնք իրենց արեամբը պիտի յաճախեն Աստուծոյ փառքը: Կաթողիկոսութիւնը թէեւ պիտի դադրի յանձին Սահակայ Ս. Գրիգորի ցեղէն, բայց պիտի ելլեն «ի միջակէ ցեղին Գրիգորի» քահանայապետներ, որոնք պիտի նորոգեն Գրիգորի ցեղին քահանայապետութիւնը: Կ՚ակնարկուի նաեւ Արշակունեաց տան դադարումը (յանձին Վռամշապուհի) եւ նոյն հարստութեան նորոգութիւնը (յանձին Արտաշիրի):

Կը հրամայուի Սահակայ Տեսիլքն եւ անոր Մեկնութիւնը «ի մագաղաթի դրոշմեալ թողուլ հաւատացեալ ժողովրդոց» (31, 37):

## Ա. ԲՆԱԳՐԻ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆԸ

3. *Այս Տեսիլքը ամբողջութեամբ յառաջ բերուած է Ղ. Փարպեցւոյ Պատմութեան Ա. Դրուագին մէջ այսպիսի խորագրի տակ.*

ա. Տեսիլ սրբոյն Սահակայ Պարթեւի, զոր եւտես ի Վաղարշապատ քաղաքի, յորժամ նստէր ի սուրբ եկեղեցւոջն ի վերայ բեմբին մերձ ի սեղանն Աստուծոյ ի սուրբ կաթուղիկէին:

Սկ. *Եւ ահա յանկարծակի բացաւ հաստատութիւնն երկնից...:*

Մեկնութիւն Տեսլեան սրբոյն Սահակայ ի հրեշտակէ Աստուծոյ. զոր[1] եցոյց յայտնի ըստ իւրաքանչիւր գլխոց եւ միոյ միոյ տանց, վասն կենաց մարդկան եւ կատարածի աշխարհի: Տեսիլ[2] սրբոյն Սահակայ:

Վջ. *«որ եւ գրով իսկ հրամայեաց ինձ զաւանդս զայս թողուլ աշխարհի»* (Ղ. Փարպ. *Տփղիս*, 1904. *էջ* 28—37):

*Նոյն Ղ. Փարպեցւոյ միջնորդութեամբ անցած է ճառընտիրներու, որոնք յառաջ կը բերեն զայն ի վարս Սահակայ, հանդերձ յառաջաբանական եւ վերջաբանական մասերով. այսպէս.*

բ. Յաղագս ի հարկէ պատմել զՏեսիլն սրբոյն Սահակայ. *«Արդ ունկնդիր լերուք ինձ մտադրութեամբ ամենայն բազմու–*

---

[1] *Պէտք է իմանալ՝ «որ (հրեշտակն) եցոյց»:*
[2] *Պէտք է կարդալ՝ «աշխարհի, զՏեսիլ...»:*

*թիւնք…:* Վջ. *Ի գեօղն որ անուանեալ կոչէր Բլուր»* (= *Ղ. Փարպ.*, *էջ* 36. 13—37. 16):

*Ձեռ. Պարիս*, Bibliothèque Nationale, cod. arm. 178, 363*ա*—67*բ* (*ԺԲ. դար*): *Վենետիկ, Մխիթ. Մատ.* 201, 367*ա*—372*ա* (*ԺԲ. դար, Ցուց. Բ.* 53): 207, 234*բ*—241*ա* (1341. *Ցուց. Բ.* 172): *Այս խմբէն է Հ. Ղ. Ալիշանի համեմատած օրինակը* (*Բազմավէպ*, 1932, *էջ* 16) *եւ Սոփերք Բ. հրատարակութեան բնագիրը* (*վերջաւորութիւնն Ղ. Փարպ.* 37, 7):

գ. Պատմութիւն վարուց սրբոյն Սահակայ հայրապետին: *Ժողովեալ միաբան նախարարք Հայոց առ Երանելոյն սուրբն Սահակ եւ բուռն հարկանէին գոտից նորա…:* Վջ. *Եւ այնուհետեւ ոչ ոք իշխէր ինչ յաղագս այսպիսի բանից խօսել ընդ նմա* (= *Փարպ.* 26, 36—37, 7):

*Հռոմ*, Bibliotheca Vaticana, 30, 40*ա*—48*ա* (1631: Tiss., 36—37): *Էջմ. Կար.* 914. *յբ* (*Ցուց.* 79): *Տիւբինգէն*, Universitätsbibliothek, 38, 224*բ*—233*ա* (1463): *Էջմ. Կար.* 894, *ձբ*, *ձթ* (1651: *Ցուց.* 72):

դ. 1. Յառաջաբան Տեսլեան սրբոյն Սահակայ պարթեւի Հայոց կաթուղիկոսի, զոր եցոյց նմա Բարձրեալն անբաւ մարդասիրութեամբ իւրով:

Սկ. *Եւ յետ մահուանն Յազկերտի որդւոյ Շապհոյ թագաւորին Պարսից՝ թագաւորեաց Վռամ որդի նորա ի վերայ աշխարհին Արեաց…* (*Փարպ.* 19, 12—22):

2. Ի յիշատակի Սրբոյն Սահակայ Հայոց հայրապետի ի ճերթողական գրոց, յաղագս վարուց եւ կենաց նորա. եւ վասն Տեսլեանն զոր ակամայ պատմեաց նախարարացն Հայոց:

Սկ. *Յայնժամ ժողովեալ ի միասին ամենայն նախարարացն Հայոց՝ չոգան առ մեծն Սահակ...* (*Փարպ.* 28, *տ.* 36 *չչ.*):

3—4. Տեսիլ Մարգարէութեան... Մեկնութիւն Ս. Սահակայ Տեսլեանն... (*Փարպ.* 29—37):

5. Մահ Ս. Սահակայ հայրապետի: *Վասն զի բազումք յեպիսկոպոսաց...* (*Փարպ.* 37, 11 *չչ.*):

*Էջմ. Կաթ.* 920 (1456), *ձմթ—ձիբ* (*Յուց.* 110): 916 *ա* (1687: *Յուց.* 85): 925 (1442, *գ.* 2—5: *Յուց.* 135): 918 (1402: *գ.* 2 5. *Յուց.* 96):

*Այս խմբէն կ'երեւայ Հ. Կ. Եսայեանի համեմատած օրինակը (որ հմմ ծառայած Հ. Գ. Սարգիսեանի հրատարակութեան. Բազմավէպ*, 1932, *էջ* 16 *եւ* 21 *ծ.*):

Ե. Տեսիլ մարգարէութեան սրբոյն Սահակայ պարթեւի եւ հայրապետի, զոր ետես յԱրարատ գաւառի ի Վաղարշապատ քաղաքի, զոր Նոր քաղաք կոչեն, յորժամ նստէր ի սուրբ եկեղեցւոջն ի վերայ բեմին մերձ առ սեղանն Աստուծոյ ի սուրբ կաթուղիկէին: Արդ գրեսցուք զՏեսիլն որ են բանք Հաւր եւ Յիսուսի Աստուծոյ եւ սուրբ Հոգւոյն՝ կարմրադեղով:

Սկ. *Ահա յանկարծակի բացաւ հաստատութիւն երկնից...:*

Մեկնութիւն Տեսլեանն սրբոյն Սահակայ պարթեւի, որպէս յայտնեաց զմեկնութիւնն նմա հրեշտակն Աստուծոյ. եւ յայտնի եցոյց ըստ իւրաքանչիւր գլխոյ եւ ըստ միոյ միոյ տանց վասն կենաց մարդկան եւ վասն կատարածի աշխարհիս: Արդ դիցուք, որպէս ասացի, զմարգարէութիւնն Տեսլեանն, որ են բանք Հաւր եւ Քրիստոսի Աստուծոյ եւ Հոգւոյն սրբոյ կարմրադեղով եւ մեկնութիւնս սեւադեղով: — *Եւ բանալ հաստատութեանն երկնից...:*

Վջ. *Եւ այնուհետեւ ոչ ոք իշխէր ինչ յաղագս այսպիսի բանից խաւսել ընդ սրբոյն* (*Փարպ*. 27—37, 8):

3. Հանգիստ սրբոյն Սահակայ հայրապետին Հայոց: «*Եւ յայնմհետէ ամփոփեալ զինքն առաքինոյն սրբոյն Սահակայ...:*

Վջ. *եւ ուրախալից սրտիւ դառնային ի բնակութիւն յիւրաքանչիւր* (*Փարպ*. 37, 9—38, 13):

*Քէչիշեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանուց*, *Թ*. 117, 199*ա*—210 (*ԺԵ*. *դար*):

*Տեսիլքս այս բոլոր ձեռագիրներու մէջ յառաջ բերուած է Ղ. Փարպեցւոյ Պատմագիրքէն:*

գ. *Միակ օրինակը, որ Ղազարէն անկախ կ'երեւայ, է էջմ. Կար.* 919, *Ե*. (*ԺԲ. դարէ*, *Ցուց*. 99—100) *ուր այսպէս ներկայացուած*

*է ցուցակագրողէն. «Տեսիլ սրբոյն Սահակայ եւ Մեկնութիւն նորա ի հրեշտակէ»: Տեսիլքս հոս տնատուած է այլ եւ այլ հատուածներու, որոնք թուարկուած են: Այս թուարկումներու համաձայն տնատուած է ապա նաեւ Մեկնութիւնը: Դժբախտաբար իմ քաղուածքներս այս ձեռագրէն չհասան ինձ ի Վիեննա. եւ կարող չեմ ներկայացնել զայն բնագրին խօսքերով: Այս օրինակս ալ ունէր հետեւեալ վերջաւորութիւնը, զոր ունի Հ. Կարապետ Վ. Եսայեանի օրինակը. այսպէս.*

*«Կատարեցաւ Տեսիլ սրբոյն Իսահակայ՝ գլուխ ԻԸ. եւ Մեկնութիւն՝ ԻԸ: Բայց այլ խօսքն մեկնութիւն ոչ ունին, որ են բանք հրեշտակին Աստուծոյ եւ պատասխանիք սրբոյն Իսահակայ: Եւ են յայտնիք եւ առանց մեկնութեան, քանզի պարզաբանք են. եւ որ պարզաբանքն են՝ մեկնութիւն մի խնդրեր: Արդ եթէ կամիս զՏեսիլդ եւ զՄեկնութիւնդ ընդ միմեանս հաւասարել՝ ամենայն բանի զՄեկնութիւն գտանել համարագրովդ՝ սկիզբն ի Տեսլենէդ առա. եւ այլին ի Մեկնութեան զայն գտանես եւ զնոյն նշան. եւ գտանես ամենայն բանի առընթեր զՄեկնութիւն»:*

*Հ. Գ. Սարգիսեան, որ Եսայեանի օրինակը հիմ ընտրած է իր նոր հրատարակութեան, Տեսլեան եւ Մեկնութեան գլուխներու համարագիրները չէ նշանակած:*

*Հարկաւոր է Էջմիածնի այս Ձեռագիրը մանր բաղդատել Ղ. Փարպեցւոյ օրինակին հետ, իմանալու համար, թէ ի՞նչ է երկու*

օրինակներուն յարաբերութիւնը: Յամենայն դէպս հատուածներու կամ գլուխներու անատումը սկզբնագրին հարազատ է, ինչպէս կարելի է եզրակացնել «բառ մից մից առանց» մեկնութենէն. տուութիւն մը, որ ԻԸ տուներն կամ գլուխները կը յարաբերէ: Նախնաբար Տեսլեան ԻԸ գլուխները կարմրադեղ եւ ԻԸ բացատրութիւնները սեւադեղ (ա՛յսպէս եւ ոչ սեւակ. ինչպէս ունի Եսայեանի օրինակը) գրուած էին: Գրչութեան այս գոյները բնագրի տեսակէտով որ եւ է իմաստ չունին:

4. Տեսիլքս այս կերպարանքի մէջ լոյս-տեսած է նաեւ զատուած Ղ. Փարպեցւոյ Ա. Դրուագէն:

ա. Գիրք եւ ճառ հոգեշահ. Կ. Պոլիս 1722, էջ 467—484:

բ. Սոփերք Հայկականք. Բ. (Վենետիկ 1853), էջ 43—67:

գ. Հ. Գ. Սարգսեան, Տեսիլ Ս. Սահակայ Պարթեւի. ԲԶՄ. 1931, էջ 529—536. 1932, էջ 16—21:

5. Քննութիւնք: Կը յիշեմ հոս հետեւեալ տեղիքները միայն.

Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Բ. (Վենետիկ 1785), էջ 696—697. 701:

Մ. Գարագաշեան, Քննական Պատմ. Հայոց, Գ. (Թիֆլիս 1895), էջ 9—19:

Գր. Խալաթեանց, Ղ. Փարպեցի եւ գործք նորին. Մոսկուա 1883, 120—130:

Մ. Էմին, О видѣні св. Саака ի Թարգմ. Վարդանայ. Մոսկուա 1861, 82—84: Նոյնը՝

Переводы и статьи Н. О. Эмина. *Մոսկուա* 1897, 300—302:

*Հ. Յ. Գաթըրճեան, Սրբ. Պատարագամատոյցք, Վիեննա* 1897, *էջ* 306—307, *ծ.* 5, *եւ էջ* 727—729:

*Հ. Կ. Տէր-Սահակեան, Փոտ եւ Սահակայ Տեսիլքը. ԲԶՄ.* 1905, *էջ* 28—32, 134—140:

P. G. Der-Sahaghian, Un document arménien de la généalogie de Basile, I, *ի թերթին* Byzantinische Zeitschrift, 20 (1911), 165—176:

*Հ. Գրիգոր Սարգսեան, Տեսիլ Ս. Սահակայ Պարթեւի. ԲԶՄ.* 1931, *էջ* 529—536. 1932. *էջ* 12—21:

*Ն. Ադոնց, Վասիլ Հայկազն (մեծագործ կայսր* 867—886): *Հայրենիք ամսագիր*, 1931, *Թ.* 11, *էջ* 120—126:

### Բ. ՆԱԽՆԵԱՑ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՔ

6. *Ղազար Փարպեցւոյ Ս. Գրուագը, ինչպէս ակնարկած եմ այլուր*[3] *հարեւանցի եւ պիտի ապացուցանեմ մօտաւոր ապագային, անհարազատ է Ղ. Փարպեցւոյ անուան եւ կեղծիք մըն է՝ Ը. դարու Ա. կէսին հրապարակի վրայ դրուած: Ըստ այսմ այն պարագան որ Տեսիլքս տեղ գտած է Ղ. Փարպեցւոյ այս Գրուագի մէջ, հարկ է նկատի առնել իբրեւ ըմբռնում Ը. դարու առաջին կէսին:*

7. *Սահակի Տեսլեան մասին ակնարկու—*

---

[3] *Հանդ. Ամս.* 1935, *էջ* 459:

թիւն մ'ունինք Շահապիվանի ժողովոյն սահմանած կանոններու Նախաբանին մէջ, ուր կ'ըսուի[4]. «Յետ փոխելոյ յերկրէս վարդապետացն Հայոց... Սահակայ եւ Մեսրովպայ... լինէր եղծումն եւ քակտումն եւ քայքայումն կարգաց եւ օրինաց սրբոյ եկեղեցւոյ, որպէս եւ տեսանէր ի Տեսլեանն յառաջագոյն սուրբ քահանայապետն տէր Սահակ կամ եւս յառաջ սուրբն Գրիգորիոս»:

Սահակի Տեսլեան մէջ եկեղեցական կարգերու «եղծման եւ քայքայման եւ քակտման» մասին ուղղակի խօսք չէ եղած. ակնարկուած է սակայն «ծփումն այլկծութեան աշխարհիս Հայոց»: Չկայ որ եւ է պատճառ ենթադրելու թէ 438—450 շրջանին, երբ հայրապետական աթոռին վարչութիւնը Յովսէփ երիցու ձեռքն էր, եկեղեցական կարգերն որ եւ է խանգարման ենթարկուած ըլլան: Նաեւ Տեսիլքը կ'ենթադրէ Եկեղեցւոյ գրութիւնը պայծառ վիճակի մէջ: Նախաբանիս հեղինակը նկատի ունի հաւանօրէն 450—484 (թերեւս նաեւ 570—590) շրջանը: Ժողովքը գումարուած է 444 կամ 448 տարւոյն: Հ. Գաթրճեան այս տեղիքն ակնարկելով կը գրէ. «Կը ճանչնայ զայն (Տեսիլքը) նաեւ Յունական Կանոնաց թարգմանիչը Ե. դարուն վերջը կամ ի սկզբան Զ.ին» (Սրբազան Պատարագամատոյցք, էջ 306): Ինձ կը թուի, սակայն, թէ

[4] Հայապատում, Բ., § 127 (էջ 351 մեծադիր հրտ.):

Նախարարնս աւելի անագան ժամանակի կը վերաբերի, առ կանուխ Ը. դարու սկիզբին:

8. Ղ. Փարպեցի իր առ Վահան գրած թղթին մէջ կը գրէ (203). «Իսկ զյառաջագոյն գրեալս (կարդա՝ ընդրեալսն) սուրբ արանցն, զորս ի Պատմութեան (կարդա՝ զորս եւ Պատմութիւնն) նախատակին Գրիգորի (այսինքն՝ Պատմութիւնն Փաւստեայ Բիւզանդեայ) դրոշմեալ յիշատակէ, զի՞նչ եւս ասացից. զարդար եւ զարժանաւոր բարեպաշտ կաթողիկոսէն՝ զսրբոյն Ներսիսէ եւ զկրօնաւոր[5] առաքինւոյն եւ զմեծ լուսաւորչէն Հայոց զտէր Սահակայ եւ զայլոց բազմաց, որոց ոչ բացեալ ի բարերան (կարդա՝ ի բարի բան) զբերանս իրեանց ի վերայ աշխարհիս այսորիկ՝ վախճանեցան»:

«Պատմութիւն նախատակին Գրիգորի» Ղ. Փարպեցւոյ ըմբռնմամբ (Ագաթանգեղեայ եւ) Փ. Բիւզանդեայ Պատմութիւնն է: Արդեամբք այլ խօսք եղած է հոն Ս. Ներսիսի «եւ այլոց բազմաց», այսինքն Դանիէլի եւ Յուսկան մասին, որոնք իրենց վախճանումէն յառաջ շատ աննպաստ արտայայտուած էին Հայոց աշխարհի ապագայի մասին: Բնականաբար ի Պատմութեան նախատակին Գրիգորի չէր կրնար խօսք եղած ըլլալ Ս. Սահակի մասին. եւ արդէն «զկրօնաւոր առաքինւոյն եւ զմեծ լուսաւորչէն» արտայայտութիւնը Սահակի հասցէին՝ անագանագոյն ժա-

5 Կարդա՞լ՝ «եւ զորդւոյ նորա զառաքինւոյն»:

մանակի կը պատկանի. առանց տարակուսի Ա. Դրուագի հեղինակէն մուծուած Ղազարի Թղթին մէջ: Ընդգծուած տողերուս ներմու-ծողը սակայն աչքի առաջ ունէր Տեսիլքը, երբ կը գրէր տողերս: Այս ներմուծումը պէտք է տեղի ունեցած ըլլայ Ը. դարու առաջին կէսին: Ղ. Փարպեցի ինքնին անծանօթ էր Սահակի Տեսլեան, ինչպէս կարելի է հե-տեւցնել հետեւեալ տեղիքէն, ուր Գրիգորի Տեսլեան խօսքերը մերձեցնելով 451ի դէպքե-րուն կը գրէ. «Յորոց ձեռն սկիզբն առեալ գայր առկաւ յերեւումն կանխաւ տեսութիւն մարգարէական սուրբ նահատակին Գրիգորի Տեսլեանն, որ երեւեցաւ նմա յԱստուծոյ...» (էջ 42): Եթէ ծանօթ ըլլար իրեն Սահակի Տեսիլքը, առանց տարակուսի պիտի չանտե-սէր յառաջ բերել նոյն Տեսիլքին համապա-տասխան տեղիքն ալ:

9. Ունինք յունարէն գրուածք մը, «Կա-թողիկոսունք Հայոց» խորագրուած[6], ուր խօ-սուելով Ս. Սահակի մասին կ'ըսուի. «Յայն-ժամ պատմեաց նոցա (նախարարացն Հայոց) զՏեսիլն զոր ետես վասն կործանման նոցա, որ եղեւն եւ լինելի»: Այս գրուածքը յօրի-նուած է առանց տարակուսի Ը. դարու առաջին կէսին. հեղինակը ծանօթ եղած է Տեսլեանս այնպէս, ինչպէս աւանդուած է Ղ. Փարպեց-ւոյ Ա. Դրուագին մէջ:

---

[6] Migne, Patrologia graeca, t. 132, p. 1237—1258.

10. Մովսէս Խորենացի իր «Հայոց Պատմութեան» մէջ, Գ. 66, կը գրէ.

«Ցամուէլ կեցեալ ամս Ե. մեռանի ի մերում աշխարհիս:

«Յայնժամ **ժողովեալ ի միասին ամենայն նախարարացն՝** չոգան առ մեծն Սահակ եւ զմեղանս յանձն առեալ՝ աղաչէին զնա դարձեալ ունել զաթոռն. **խոստանային ի Պարսից արքայէն հաստատել զնա,** մուրհակ ամենեցուն կնքեալ՝ ազգաւ տալ թոռանց նորա զնոյն իշխանութիւն: Այլ նա ոչ առնոյր յանձն. եւ **ի բազում թախանձելոյ նոցա հարկաւորեալ՝ պատմեաց զՏեսիլն, որ յառաջ քան զբազում ժամանակս երեւութացաւ նմա ի քուն՝ ապագայիցն յայտնութիւնք: Զոր լուեալ նախարարացն** եւ գիտացեալ, թէ յաստուածային հրամանէ դադարեաց յազգէ նորա քահանայապետութիւնն՝ **յարտասուս հարեալ** աւաղելով զինքեանս, ըստ Աւետարանին բանի, թէ Հարկ է գալ գայթակղութեանն, բայց վա՜յ այնոցիկ (!), ընդ որ ձեռն գայցէ գայթակղութիւնն. թոյլ ետուն նմա» (?):

Մ. Խորենացի աչքի առաջ ունեցած է Տեսիլքս իր Յառաջաբանովը եւ Վերջաբանովը, ուրիշ խօսքով Ղ. Փարպեցւոյ Ա. Դրուագը այժմեան կերպարանքի մէջ: Ընդգծուած բառերը քաղուած են կեղծ Ղազարի Ա. Դրուագէն: Բայց Խորենացւոյ յաւելուածն է «մուրհակ ամենեցուն կնքեալ՝ ազգաւ տալ թոռանց նորա զնոյն իշխանութիւն». այսինքն

հայրապետական աթոռին ժառանգ կարգել Մամիկոնեանները:

11. Յովհաննէս Դրասխանակերտցի իւր Պատմութեան մէջ թէպէտ աչքի առաջ ունի Ղ. Փարպեցւոյ Ա. Դրուագը, գրէ թէ «մեծն Սահակ յետոյ աղաչեցեալ ի նախարարացն՝ ոչ առնոյր յանձն կրկին առաջնորդ լինել նոցա, սակայն ոչինչ կասէր միշտ զհոգեւոր կաթն դիեցուցանել մանկանց եկեղեցւոյ» (էջ 57, տպ. Աղանեանց), ուստի Տեսլեան Յառաջաբանին եւ Վերջաբանին ծանօթ է Ղազարէն, սակայն խուսափած է ակնարկութիւն մ՚իսկ ընել Տեսիլքի մասին: Յովհ. Պատմաբան սիրող չէ Տեսիլներու. անիկա լռութիւն պահած է նաեւ Ս. Գրիգորի Տեսլեան եւ Դանիէլի, Յուսկան եւ Ներսէսի գուշակութիւններու մասին:

12. Տեսլեան ծանօթ է նաեւ Թովմաս Արծրունի (74). ուշագրաւ են իր տողերը. «Իբրեւ վախճան առնոյր կարգ[եալ] եպիսկոպոսացն որ ի Պարսից, որք առանց եպիսկոպոսին Կեսարու ձեռնադրեցան յԵրան[եալ] եպիսկոպոսէ, միաբան ապա նախարարքն Հայոց եկին առ սուրբն Սահակ, անկեալ առ ոտս նորա մեծաւ հառաչանօք՝ մի յիշել զանցս զանցիցն անցելոց, զոր արարին առ սուրբն, այլ դարձեալ կալցի զաթոռ հայրապետութեանն. եւ խոստանային գնալ ըստ հրամանի նորա: Զոր ոչ առ յանձն լնել նոցա. <եւ պատմէր նոցա> զհանգամանս Տեսլեանն,

զոր եցոյց նմա Հոգին սուրբ՝ որ ինչ առ յապա ժամանակս գործելոց էր. զբառնալ եպիսկոպոսապետութեանն եւ թագաւորութեանն ի տանէն Արշակունեաց, եւ զկարգապետել անարժանիցն եւ զընտրութիւնն սրբոց, եւ դարձեալ զնորոգումն հայրապետութեան եւ թագաւորութեան ի նոյն զարմէ Արշակունեաց, եւ զգալուստ Նեռինն եւ զգալուստն Քրիստոսի. եւ զհանդերձեալ դատաստանացն եւ զհատուցումն իւրաքանչիւր ըստ գործս իւր. զոր ետես ի մեծի հինգշաբաթօջն»:

13. Գրիգոր Մագիստրոս իւր առ Վարդապետն Սարգիս թղթին մէջ (էջ 55) կ՚ակնարկէ միայն. «կամ ըստ մերոյն Տեսլեանն Իսահակայ սրբոյ եւ քահանայապետի»:

14. Ստեփանոս Ասողիկ. «Մեծ քահանայապետն Սահակ... սա է, որ նախ քան զքահանայապետութիւնն ետես ի գիշերի Տեսլեան զբառնալ թագաւորութեանն Արշակունեաց եւ զդադարել քահանայապետութեանն յազգէն սրբոյն Գրիգորի եւ այլոց ոմանց զկարգն վրճակել. իսկ ի վախճան ժամանակի անդրէն, ասաց, դարձեալ զյառնել թագաւորութեանն եւ զնորոգել քահանայապետութեանն ի նոցունց ազգաց սահմանեալ ժամանակաւ» (էջ 75—76, հրտ. Մալխասեան):

15. Ներսէս Կլայեցի ի Վիպասանութեան[7] կ՚երգէ.

---

[7] Տեառն Ներսեսի Շնորհալւոյ Բանք չափաւ: Վենետիկ 1830, էջ 535—536:

«Եւ ըղՍահակ սուրբըն մերժեալ
որ այժմ իրի ոչ հաղորդեալ.
Որում փոխան Սուրմակ նըստեալ,
եւ Բարգիշու գնա յաջորդեալ:
Այլ նախարարքըն զըղջացեալ,
առ հովուապետըն քաղցր եկեալ.
Աղերսական բանիւ մաղթեալ,
լինել տեսուչ նոցա դարձեալ:
Սակայն սրբոյն ոչ յանձն առեալ,
այլ զհրաշալին Տեսիլ պատմեալ.
Որք արբամութեամբ մեծաւ լըցեալ,
զկորուստ անձանց իւրեանց լացեալ:...
Տեսիլ սրբոյն աստ կատարեալ,
Թագ եւ հովիւ Հայոց բարձեալ.
Զոր նախորդամբըն եցոյց ծաղեալ,
եւ գունդն ոսկի կուռով ծածկեալ»:

16. Ներսէս Լամբրոնացի իր առ Յուսիկ Անտիոքացի կրօնաւոր թղթին[8] մէջ պատասխանելով անոր առարկութեան, թէ «Ոչ է առ Հայոց ազգիս եկեղեցին քահանայութեան շնորհ, եւ թէ այս սրբոյն Սահակայ Տեսլեամբըն յայտնեցաւ, թէ բարձաւ» կամ ուրիշ խօսքով «զի որ ի մէնջ առ ձեզ համաձայնին, ի սրբոյն Սահակայ Տեսլենէն խափանել ասեն առ մեզ զայս շնորհ», կը գրէ. «Մնաց այսուհետեւ լուծանել զոր ի սրբոյն Սահակայ Տեսլեն կարծիք ի մերոցս առ ձեզ անկաւ՝ եկե-

[8] Թուղթ Ներսիսի արքեպիսկոպոսի Կիլիկեցւոց Տարսոնի պատասխանի Յուսիկանն արգելական ճգնաւորի ի մեծն Անտիոք. հրտ. Մ. Մսերեանց, Ճռաքաղ 1859, էջ 5—6. 37—42:

լոց ։ Եւ նախ գոյս ասեմք, թէ Տեսիլն այն ոչ հաւատալի առ մեզ գոլ սրբոյն Սահակայ, այլ ի կարծիս իմոյ վասն ոչ առնելոյ նմա ի գիրս իւր յիշատակ Մովսէսի Խորենացւոյ, որ զնմանէ ըստ կարգի պատմեաց ։ Երկրորդ զի ինքն հրեշտակն որ եցոյց Սահակայ զՏեսիլն, ոչ յայտնեաց թէ խափանեալ է, այլ միայն ի նշանակ քահանայութեանն՝ եցոյց զնախորան եւ ի նշանակ թագաւորութեանն՝ զգունդն ։ Եւ եղծումն նոցին ի տողս գրոյն ո՛չ ըստ հաւատոյն իմանամք ասացեալ, այլ ըստ վարուց ։ Եւ զայն եցոյց թէ թագաւորութիւնն յԱրշակունեացն եւ ի Պահլաւունեացն բարձցի, որպէս եւ բարձաւ . զի թէ ըստ բառնալոյ շնորհին էր, որ ի վերջին ժամանակն լինի, ի նոյն կարգն է եւ ի նոցանէ ձեռնադրի ազնուականն եւ ոսկեգիրն՝ ի ջնջերոյն . որով ցուցանէ, թէ շնորհ պատուոյն անեղծ է ։ Ի վարուցն պատկեր է ոսկին, եւ եղծեալն ի վարուց վատթարութիւն» ։ ... «Իսկ ապա թէ ճշդէք ի վերայ մեր զՏեսիլ սրբոյն Սահակայ, առնումք մեք ի վերայ ձեր ... զերանելի աստուածաբանին Յոհաննու սքանչելի Յայտնութիւնն ի վերայ թագաւորական քաղաքին (Կ. Պոլսոյ) ... ։ Արդ եթէ մեք ըստ Սահակայ Տեսլեանն անգոսնեմք եւ վասն ջնջեալ գրոյն տանց քահանայութեան իմամք, ապա եւ դուք ըստ Յոհաննու աստուածաբանին Յայտնութեանն պարտաւորիք ... ։ Ինձ թուի թէ իմաստունքն որ ըստ Սահակայ Տեսլեանն զգուշացեալ խորշեցան ի Հայոց՝ Կոստանդին

Ուռհայեցին եւ Գրամարտիկ Կլայեցին եւ Ենոք Երէց Վահկացին, ոչ էին ընթերցեալ. զի այս կարի սոսկալի եւ քստմնելի նախատինք է քան զՍահակայ ջնջեալ գիրն...: Եւ Ենոք Երիցու նախատինքն կարի ընդարձակ է առ մեզ ի գրոց յիշատակարանս Հելլենացւոց ազգին վասն Մոռոժանին զլէոն գրելոյ»:

Բայց, ինչպէս տեսանք, Մ. Խորենացի քաջ ծանօթ էր Տեսիլքիս: Նոյն ինքն Լամբրոնացի, որ հոս կասկածելի կը գտնէ Տեսիլքիս վաւերականութիւնը, այլուր[9] կը գրէր. «Սահակ սուրբ հայրն մերձ առ սեղանն տէրունական նստելով՝ ետես զհրաշագանն Տեսիլ, ըստ որում ասէ Պատմութիւնն»:

17. Մատթէոս Ուռհայեցի. «Աստանօր սկիզբն եղեւ կատարելոյ Տեսլեան սրբոյն Սահակայ Պարթեւի, զոր ասացն ջնջել ոսկեգիր կարգացն եւ գծագրել սեւագեղ թանաքով. վասն զի ահա ի ժամանակիս յայսմիկ ի չորս բաժանեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի» (էջ 229—230, տպ. էջմ.):

18. Յիշենք նաեւ Կոստանդին Ծիրանածինը (913—959), որ հետեւեալն գրած է Տեսլեանս մասին (Theophanes continuatus, 241 ed. Bonnae) = Չամչ., Բ., 696.

«Կատարեցաւ յայնժամ մարգարէական գուշակութիւն եւ պատգամ երեքհարիւր եւ յիսուն ամաց, զոր աւանդեալ էր Սահակ՝

---

9 Ն. Լամբրոնացւոյ Խորհրդածութիւնք ի կարգս Եկեղեցւոյ: Վենետիկ 1847, էջ 26:

այրն երեւելի, արժանացեալն շնորհաց կանխածանօթ գուշակութեան, որ եւ ինքն էր յազգէ եւ ի տանէ Արշակունեաց»:

Եւ այս կը գրէ Չամչեան. «Այս յարմարումն Տեսլեան կարէ բառ պատշաճի ընծայիլ Վասլի՝ ոչ իբր ի գլուխ ելեալ ի նմա տիրապէս, այլ՝ իբր պատկեր գուշակեցելոյն, հաշուելով զՅԾ ամն ի դադարելոյ իշխանութեան որդւոց Թոռին որոյն Սահակայ, այսինքն Մեծին Վահանայ Մամիկոնէի եւ եղբօր նորա Վարդայ, յամէ Տեառն 515 մինչեւ ցամն 867, յորում նստաւ կայսր այս Վասիլ Արշակունի» (Բ. 697):

Կոստանդին Ծիրանածին, որ թոռն էր Վասլի, այսպէս մեծարեցուցած է Տեսլեան այն խօսքը, թէ «մերձ յերեւումն պղծոյն անապատի դարձեալ յառնէ թագաւոր յազգէն Արշակունեաց» (34), Վասիլ կայսեր, որ գահ բարձրացած էր 867ին:

19. Աւանդութիւնը, զոր Կոստ. Ծիրանածին յիշեց, արձագանգ գտած է նաեւ Վարդան Արեւելցւոյ Պատմութեան մէջ (85).

«Դարձեալ ի նոյն կայսերէ Վասլէ եկն ներքինի մի Նիկիտ կոչեցեալ յՅԻԵ (876) թուին, խնդրել ի յԱշոտոյ թագ, բերեալ շատ պարգեւս. քանզի Վահան ոմն եպիսկոպոս Տարօնոյ ասէր նմա (Վասիլ կայսեր) թէ Արշակունի իցէ. զի մայրն հայ էր. եւ կատարել թուէր Տեսլեանն Սահակայ սրբոյ՝ նստել թագաւոր Արշակունի. եւ կամէր պսակել ի Բագրատունեայն (Աշոտոյ): Զոր կատարէ

*Աշտա, ընդ նմին տարք եւ տան հազար ըն-ծայ նորաշէն եկեղեցւոյն»:*

20. *Տեսլեան այս մերձեցումը ժամանակակից գիւղաց, զոր կը տեսնենք Մատթ. Ուռհայեցւոյ եւ Կոստանդին Ծիրանածնի քով, կը յորդորէ զմեզ յառաջ բերել ուրիշ երկու տեղիք ալ ԺԴ. եւ ԺԵ. դարերէ:*

*Դանիէլ Աղթամարցի ներբողելով Աղթամարայ Դաւիթ Ա. կաթողիկոսի ընտրութիւնը, կը գրէ. «նստոյց զնա Տէր յաթոռ մերոյ սուրբ Լուսաւորչին սրբոյն Գրիգորի եւ խառնեաց զնա ի կարգ սուրբ հարցն... Ներսիսի եւ Սահակայ. զի յառաջ ցուցեալ Հոգւոյն սրբոյ Տեսլեամբ սրբոյն Սահակայ զանցս այնորիկ Հայաստան աշխարհիս, անկանիլ ի տերութենէ եւ ծառայել ազգաց օտարաց եւ լինել հակառակ ճշմարտութեան, որպէս զՄուրման եւ զԾմուէլ, որ հակառակ էին ընդդէմ աստուածատուր շնորհացն, եւ դարձեալ նորոգիլ տեսութեան քարտէզին, որ ունէին ոսկեգիրն եւ կարմրագեղն գրերոց մերափոխումն, եւ սեւագեղն եւ կարգ եւ կէտն եւ ջնջագիրն զհակառակացն ճշմարտութեան. իսկ միւս այլ կարգին նորոգիլ, որ ունէր օրինակ զմերոյ սուրբ հայրապետին զաստուածայայտն տեսան Դաւթայ ընտրելոյն Տեառն եւ օծելոյն եւ նստելոյն յաթոռ սուրբ Լուսաւորչին մերոյ» (Թովմ. Արծր. Յաւելուած, էջ 312—314):*

*Դաւիթ Թոռնիկեան կը ներկայացուի «ազգակից մեծ եւ քաջ նահատակիս Մամի-*

կոնքին Վարդանայ» (311). ուստի եւ էր ի ցեղէն Ս. Սահակայ կողմնակի գծով:

21. Այսպէս նաեւ Յովհաննէս մկրտնակեաց, 1442ին կը գրէ Տօնականի մը յիշատակարանին մէջ, ակնարկելով Կիրակոս կաթողիկոսի ընտրութիւնը Էջմիածնի աթոռին վրայ. «Արդ ի թուաբերութեանս Հայկազեան տումարի ՊՂԱ. ... կատարեցաւ Տեսիլ Սահակայ Հայրապետին տն Աստուծոյ, որ տեսաւ սեղան չորեքկուսի ամրանման եւ խաչ լուսեղէն ի վերայ կանգնեալ. եւ սկեղ արծաթի ի վերայ սեղանոյն եւ մաղաղաթ թղաչափ ի վերայ. եւ թն տողն ոսկի. յառաջն գիր եւ մէջն եղծեալ եւ ջնջեալ. եւ տող մի ոսկի եւ կէս կարմիր ի վերջն գրեալ: Եւ թն ոսկի տողն Լուսաւորիչն է մինչեւ ի Սահակ տն Աստուծոյ. եւ մէջն որ եղծեալ էր եւ ջնջեալ, եւ աթոռն ծովագոյն սառնանման, սեւ կապաւով ծածկեալ՝ ի Սահակայ մինչեւ ի մեզ կաթողիկոսք եւ եպիսկոպոսք, որ նստան, եղծեալք եւ ջնջեալք ի բարութենէն կենաց: Զի արծաթով նստան եւ անիծիւք եւ նզովիւք գաշխարհս լցին: Այս էր սեւ կապան որ տարածեալ էր ի վերայ ազգիս: Այժմ բարձաւ անէծքն սուրբ Լուսաւորչի ազաւթիւքն, որ էր թուխ կապան եղծեալ եւ ջնջեալ: Նորոգեցաւ աթոռ Լուսաւորչին վերստին: Հինն էանց եւ եղեւ ամենայն ինչ նոր. հինն՝ անէծքն էր եւ նորն՝ օրհնութիւն: ... Սա է տող ոսկին որ ի վերջք մաղաղաթին գրեալ է: Աստա-

նաւր կատարեցաւ մարգարէութիւն առն Աստուծոյ Սահակայ»[10]:

22. Տեսիլքիս այս մերձեցումը Կիրակոս կաթողիկոսի ընտրութեան, ինչպէս ինձ կը թուի, Թովմաս Մեծոփեցւոյ հնարագիտութիւնն է: Սա իր «Յիշատակարանին» մէջ կը գրէ[11] նոյն մտքով. «Կատարեցաւ մարգարէութիւն եւ Տեսիլ առն Աստուծոյ սրբոյն Սահակայ Պարթեւի, որ ետես ի Վաղարշապատ քաղաքի»: Թովմաս յառաջ բերելով Տեսլեան տողերը քաղուածաբար, Մեկնութեան մէջ կը գրէ. «Տեարն թղաչափ եօթն տող ոսկին Լուսաւորիչն Գրիգոր է մինչեւ ի սուրբն Սահակ. եւ եղծեալ եւ ջնջեալ գիրն, որ ոչ երեւէր հետն, կաթողիկոսունքն էին, որ նստան յաթոռ սուրբ Լուսաւորչին յետ Սահակայ. եղծեալք են եւ ջնջեալք ի դպրութենէն կենաց. զի անիծիւք եւ կաշառօք զաշխարհս լցին: ... Եւ ազգս Հայոց բոլորովին ի ջնջեալ եւ ի յեղծեալ գիրն մտաւ յայն օրէն ի հետ, որ կաթուղիկոսութիւնն ի յէջմիածնէն ելաւ. այժմ ողորմեցաւ արարիչն Աստուած եւ վերստին հաստատեաց զաթոռն Պարթեւին Գրիգորի. եւ սքանչելի հրաշիւք յայտնեաց զխաչակրօն... տէր Կիրակոս կաթողիկոսն Վիրապեցի: Եւ այս էր տող եւ կէս ոսկին, որ հեռի էր յեղծեալ եւ ի ջնջեալ գրէն: Եւ գրեալ տող մի ոսկի եւ կէսն կար-

---

[10] Էջմ. Թ. 996, թղ. 563ա:

[11] Թովմա Մեծոփեցու Յիշատակարանը. Հրտ. Կ. Կոստանեանց: Թիֆլիս 1892, էջ 59—61:

մեր. զի յէջմիածին կաթուղիկոս նստաւ եւ մտաք յոսկէգիրն եւ ելաք յեղծեալ գրէն եւ ջնջեալ տառէն: Եւ ամենայն անէծք եւ նզովք ... ի յօրհնութիւն փոխարկեցաւ»:

Աւելորդ են այս տեղ ժամանակակիցներէ եւ աւելի յետնագոյներէ ուրիշ վկայութիւններ:

### Գ. ԿԱՐԾԻՔՆԵՐ ՏԵՍԼԵԱՆՍ ՇՈՒՐՋԸ

23. Տեսանք վերագոյն (§ 16), թէ Տեսիլքիս վաւերականութեան մասին կասկած յայտնած էր արդէն Ներսէս Լամբրոնացի. «զայս ասեմք, թէ Տեսիլն այն ոչ հաւատալի տա մեզ՝ գոլ սորայն Սահակայ, այլ ի կարծիս մնայ»: Պատճառաբանութիւնը, զոր յառաջ կը բերէր Լամբրոնացի, յատկապէս այն, թէ Մովսէս Խորենացի անոր մասին յիշատակութիւն չէ ըրած, հիմնաւոր չէր. վասն զի Մ. Խորենացի ոչ միայն Տեսիլքը ճանչցած է, այլ եւ կարդացած է անոր Յառաջաբանը, այնպէս ինչպէս ներկայացուած է այն Ղ. Փարպեցւոյ վերագրուած Ա. Դրուագին մէջ:

24. Մկրտիչ էմին[12] կը համարի թէ Տեսիլքը այն ձեւին մէջ, ինչպէս աւանդուած է, կեղծիք մըն է, յետ ժամանակաց մուծուած Ղ. Փարպեցւոյ Պատմութեան մէջ. «լեզուն, կը գրէ էմին, բոլորովին տարբեր է Ղազարի լեզուէն»: Ինքն ալ կը ձայնակցի Ներսէս Լամբրոնացւոյ, երբ կը հաւատայ թէ Մ. Խո-

[12] О видѣніи святаго Саака (տե՛ս § 5):

րենացի անծանօթ է Տեսիլքիս։ Ն. Լամբրոնացի, որ կը կասկածէր Տեսիլքիս վաւերականութեան մասին, հաւանօրէն չէր գտած զայն Ղ. Փարպեցւոյ Պատմութեան մէջ։

Մ. Էմին կ’երեւայ թէ ուշադրութեամբ չէ կարդացած Մ. Խորենացւոյ վերագոյն յառաջ բերուած (§ 10) հատուածը։ Մ. Խորենացի աչքի առաջ ունեցած էր Ղ. Փարպեցւոյ Ա. Դպրութիւնը, ուր կար Տեսիլքս իր Յառաջաբանով. ուստի եւ Ն. Լամբրոնացի, եթէ ունէր ձեռքի տակ Ղ. Փարպեցւոյ մատեանը, կարդացած պիտի ըլլար հոն Տեսիլքս ալ։

25. Գրիգոր Խալաթեանց[13] իւրացնելով իր ուսուցչին՝ Մ. Էմինի տեսութիւնը կը փորձէ նոր պատճառաբանութիւններով ամրացնել զայն. «Եթէ ոճ եւ լեզու Տեսլեանն եւ եթէ այլ պարագայք ինչ ներքին այնպէս կասկածելի առնեն զգրութիւնդ, մինչ հազիւ թէ մարթ իցէ Ղազարայ զայն համարել գործ։ ...Տեսիլն Ս. Սահակայ առ ժամանակաւ գիտնական եպիսկոպոսի (Ներսիսի Լամբրոնացւոյ) շրջէր ի միջի ժողովրդեան իբրեւ առանձին իմն աւանդութիւն եւ առաւելն ոչ անցեալ ի չորս մատենին Փարպեցւոյ։ Թուի, թէ յետ ժամանակի ի վերայ համառօտ բանից Փարպեցւոյ յարմարեալ իցէ մանրապատումն այն Տեսիլ՝ իբրեւ գրաւոր իմն աւանդութիւն...։ Կարծիքս մասամբ իւիք

---

[13] Ղ. Փարպեցի եւ գործք նորին (տե՛ս § 5), էջ 120—130։

հաստատի այնու, զի պատմագիրք ոմանք՝ ծագկեալք զկնի Ե. դարու՝ մինչեւ ցորոշ իմն ժամանակ (ցԺ. դար) ոչ յիշեն ինչ գրաւոր Տեսլենէ Ս. Սահակայ հանգոյն այնմիկ, որ աւանդի ի Պատմութեան Ղազարու» (124): Առաջին անգամ ի մերոց Թովմաս Արծրունի եւ օտարներէն՝ Կոստանդին Ծիրանածին կը յիշեն Տեսիլը բառ այժմեան բովանդակութեան (124—126): Ասկէ «մարթ է ընթադրել, կը գրէ Խալաթեան, թէ գրաւորն այն Տեսիլ թերեւս ի Ժ. իցէ յօրինեալ դարու եւ ի կարգ Ղազարայ Պատմութեան յարմարեալ, թէեւ իբրեւ անգիր աւանդութիւն գուցէ ընդ երկար շրջէր ի մէջ ժողովրդեան» (126): Ինչպէս, կ՚ըսէ Խալաթեանց, Փաւստոսի համառօտ ազդերէն ծագեցաւ «մանրամասնեայ գուշակութիւնն Ս. Ներսիսի ձեռամբ Մեսրոպ երիցու Ժ. դարուն», «թուի մեզ, եթէ բառ այնմ օրինակի ընծայեցաւ ի լոյս եւ մերս այս երկարապատում ‘Տեսիլ Սահակայ,, յառաջացեալ ի հակիրճ բանից Խորենացւոյ եւ Ղազարայ. այլ թէ որո՞յ ձեռամբ՝ գործ է գտանել» (130): Տեսլեան հեղինակը ծանօթ է Գրիգորի Տեսլեան, որմէ փոխառութիւններ ալ ունի (127—128, ծան. 2):

26. Մ. Գարագաշեան[14] կը գրէ. Սահակայ Տեսիլն «նմանութիւն է Տեսլեան Լուսա-

[14] Մ. Գարագաշեան, Քննական Պատմութիւն Հայոց, Դ., 9—19:

ւորչին, և՛ արուեստը և՛ լեզուն խոնար-
հագոյն քան զնա: Նպատակն է՝ Վարդա-
նանց ժամանակին պատմութիւնն, ուխտա-
պահաց և ուրացելոց (զորս յայտնի իսկ
կ՚ակնարկէ ուրեք), ցուցնել մարգարէական
ոգւով կանխաւ յայտնուած առ Սահակ՝ իւր
նախախնամութեան խորհրդով սահմանուած:
Այս տեսութիւնէն յայտնի է, թէ գրողն էր
յետոյ քան զպատերազմն Վարդանանց, ի մի-
ջոցի երեսնամեայ ժամանակիս 452—482: ...
Փարպեցին... կը յուսայ ևս թէ Սահակ
գրեց զայն երկնաւոր հրամանաւ, թէպէտ յե-
ղուն չէ Սահակայ...: Աւելորդ է ասել, թէ
Տեսիլս այս... ոչ այլ ինչ է, եթէ ոչ կեղծիք
բարեպաշտ քրիստոնէի, այն դարուն ճաշա-
կին յարմար՝ հոգևոր, շատ անգամ ցուրտ
այլաբանութիւններով լի...: Գիտել արժան է
սակայն, թէ բարեպաշտ հեղինակն, ո՛ ոք և
է, համբակ էր իւր արուեստին· քանզի կու-
տայ գուշակել առ Սահակ իւր յայտնու-
թեամբ թէ Լուսաւորչայ ցեղէն պիտի նստէին
ժամանակ մը կաթողիկոս ընտիր անձինք,
որոց պիտի յաջորդէին յետոյ անարժան մար-
դիկ· բայց այս եղաւ յառաջ քան զՍահակ,
մինչ Տեսիլը, որ է մարգարէութիւն՝ ապա-
գային համար է և ոչ անցելոյն. Նա մանա-
ւանդ այն յայտնութեան մէջ իւր ապագայ
ցուցուած անձանց մին է նոյն ինքն Սահակ»:

27. Հ. Յովսէփ Գաթրըճեան իւր Սրբա-
զան Պատարագամատոյցք Հայոց» աշխատու-

*թեան մէջ*[15] *այլ եւ այլ առիթներով խօսած է Տեսիլքիս մասին. կարեւոր կը համարիմ հոս ամփոփել իր տեսութիւնը Տեսիլքիս շուրջը, որ վրիպած է ցայսօր շատերու ուշադրութենէն. «Տեսիլ սրբոյն Սահակայ» գրուածքը «Ղ. Փարպեցի՝ Կաթողիկէին Վարդարշապատու երէցը՝ Ե. դարուն վերջերը մեզի՝ անանկ ինչպէս որ կը գտնէ, կու տայ: Մեզի... Սահակայ Տեսլեան ստուգիւ եղած ըլլալը կամ չըլլալը հոգ չէ. բաւական է որ ան ատեն եւ ոչ ետքը մէկն այսպէս խորհեցաւ եւ գրեց եւ ան գաղափարներն ունեցաւ»: «Լեզուն Ե. դարուն շատ վերջերը չ'իյնար»:*

*«Հրեշտակ մը տեսնուածին մեկնութիւնը կու տայ. այս մեկնութեան գլուխն ալ սանկ գրուած է. «Մեկնութիւն տեսլեան սրբոյն Սահակայ ի հրեշտակէն Աստուծոյ, զոր եցոյց յայտնի բառ իւրաքանչիւր գլխոց եւ միոյ միոյ տանց, վասն կենաց մարդկան եւ կատարածի աշխարհի:* Արդ գրեցաք զՏեսիլն կարմրադեղօք, եւ զմեկնութիւնն՝ սեւադեղօք»[16]:

---

[15] *Հ. Յ. Գաթրճեան, Սրբազան Պատարագամատոյցք Հայոց, Վիեննա* 1897, *էջ* 727—728:

[16] *«Այս նօտագիր նշանակուածները, որոնք Փարպեցւոյ* 1793*ի տարւոյ տպագրութեան մէջ չկան, Հռոմայ* Museo Borgiano*ի ընտիր ընթերցուած ունեցող օրինակէն են եւ հարազատութեան ամէն նշան ունին: Այսպէս ուրեմն գոյներով զատեր է ի սկզբան ու տեսիլքը շինողը. ընդօրինակողք չպահելով ու գունոց զանազանութիւնը, հարկ համարուեր է վերջապէս* <*ջնջել*> *սոյն ծանուցումն ալ: Իսկ* 1873 *տարւոյն տպագրութիւնը, մեզի անծանօթ պատճառով, բոլորովին զանց կ'ընէ ու վերնագիրները, թէպէտ ասոնք անտարակոյս նախնական են»:*

Չէ թէ իրմէ, այլ Տեսիլը անանունէն գրուած է՝ կ՚ըսէ Ղազար: Առաջին մասին նկատմամբ՝ գրեթէ անելորդ է մեզի իր վկայութիւնը. վասն զի արդէն լեզուն Ղազարայ չէ, իր ժամանակէն մաքրագոյն եւ հնագոյն ըլլալով. խնդիրն երկրորդ մասին վրայ է: Սահակ, որն որ աս Տեսիլը տեսեր այսպէս՝ գրով ալ թողուցեր է, կ՚ըսէ Ղազար, ինչպէս նոյն իսկ տեսլեան խօսքերն ալ կը պահանջեն: Կրնա՛յ պարթեւ հայրապետը Տեսիլք մը տեսած ըլլայ կամ ոչ, նոյնը պատմած ըլլայ կամ ոչ՝ երբ որ կ՚ուզէին նախարարք որ իրեն կաթողիկոսական իշխանութիւնը նաեւ պարսկական Դրան կողմանէ հաստատել տան: Սակայն դժուարաւ կրնանք համոզուիլ թէ ասիկայ այնպիսի տեսլեան մը վաւերական գրութիւնն ըլլայ: «Գրիգորի գրոց» (Ագաթանգեղեայ) մէջ գտնուած Տեսլեան հետ ասիկայ զոյգ մը կը կազմէ, բաղմօք անկէ առօր առնուած ձեւ, գաղափար, խօսք եւ բառ...: Բարեբախտութեամբ մինակ ներքուստ (լեզուէն եւն) չէ որ աս հնութիւնն իրեն կ՚ընծայուի: Չունինք ամենեւին տարակոյս որ ասիկայ այսպէս առջեւն ունէր նաեւ Մ. Խորենացի եւ նոյնէն հաներով կը նշանակէր վերջինեան դէպքը: Վասն զի մեր Տեսիլքը, ինչպէս որ Ղազար յառաջ կը բերէ, յառաջ եւ վերջը պատմութիւն կամ անցեկութիւն մ՚ունի երրորդէ մը գրուած, որուն կը հետեւին թէ՛ Ղազար եւ թէ ծերունի

Բագրեւանդայ եպիսկոպոսը[17]: Այս ժամանակներէն քիչ յառաջ կրնայ ըլլալ այն անանուն Կանոնաց Հաւաքողը, որն որ Շահապիվանու ժողովոյն կանոններուն գլուխը յառաջաբան մը յօրինելով կը յիշէ ու Տեսիլքը, անոր մէջ ակնարկութիւններ գտնելով՝ իբր գլուշութիւն կարգի եւ կանոնի խանգարման, որուն դարման տանելու կը ժողովին Շահապիվանու Հայք (իբր 447ին), միեւնոյն ատեն յայտնելով ու Հաւաքիչը՝ թէ ինքը բաւական հեռու է այս ժողովոյն ատենէն, Վարդանայ Մամիկոնենոյ եւ անոր ազգատոհմին նահատակութիւնները գիտէ, ուստի իբր 470—480ին (Վահանայ Մամիկոնենի ատեններուն) կը յօրինէ իր Հաւաքումն՝ որն որ Մանդակունոյն ալ անծանօթ չէ, ինչպէս ուրիշ տեղ մ՚առիթ կ՚ունենանք ցուցնելու:

— Մեր Տեսլեան յօրինողը, հրեշտակին բերանը դրած խօսքերով, բաւական ճիշդ իր բարեպաշտական նպատակ ունեցող աշխատութեան ժամանակը կը ցուցնէ, այսինքն 451էն՝ Վարդանայ մահուանէն, Վասակայ դրժմանէն եւ ուխտապահ նախարարաց կապանքէն ետքը․ ուստի իբր 460ին, գուցէ քանի մը տարի ալ ետքը յարմարցուած գրութիւն մըն է հիմա ձեռքերնիս»[18]:

28․ Հ․ Կ․ Տէր-Սահակեան[19] նկատի առ-

---

17 Խոր․ Գ․ 66:

18 Այլուր կը գրէ Գաթրճեան․ «460—470ին շինուած է Սահակայ Տեսիլն»․ Սրբազան Պատարագամատոյցք, էջ 306—307․ ծան․ 5:

19 Հ․ Կ․ Տէր-Սահակեան, Փառ եւ Սահակայ Տե-

նելով Տեսլեան հետեւեալ տեղիքը «Յայտնեաւ մինչեւ ի վախճան աշխարհիս՝ երեք տասներեակք ամաց եւ կէս տասներեկի համառօտեսցի ի վերայ ամենայն աշխարհի, մինչեւ յերեւումն պղծոյն անապատի» եւ «Եւ լինին սուգս յայտնապէս թուով ամք երեք հարիւր յիսուն», կը զուգակշռէ զայն Կոստանդին Ծիրանածնի խօսքերուն հետ. «Այն ժամանակ (Վասլի թագաւորած ժամանակ) ի գլուխ ելաւ գուշակութիւնն եւ մարգարէութիւնը՝ զոր 350 տարի առաջ տեսած էր Իսահակ, ամէնէն կանխատես մարդը՝ ի մէջ երիցանց եւ կրօնաւորաց, որ եւ ինքն իսկ Արշակունեաց տոհմէն կը սերէր. տեսիլքով իմացաւ, թէ այսչափ տարի անցնելէ վերջ՝ Արշակայ սերունդէն մէկը հռովմէական տէրութեան մականը պիտի կրէ». եւ կը հետեւցնէ. ա. Թէ Կոստանդին Ղ. Փարպեցիէն գիտէ զայս: բ. Ղ. Փարպեցւոյ Պատմութիւնն, զէթ Տեսիլքը թարգմանուած էր յունարէն (31—32): գ. «Ս. Սահակ կ՚ապրէր Ե. դարու մէջ, երեք դար ու կէս աւելցնենք ասոր վրայ, զի «30 տարի» կ՚ըսէ Ղազար Փարպեցի, — պիտի հասնինք Թ. դարու կէսը, որ է ըսել 850ին. այս թուականին էր որ պիտի երեւնար նախագուշակեալ կայսրը» :

---

սիլքը. Բազմավէպ 1905, էջ 28—32, 134—140: Նոյն մասերը արտայայտուած են նաեւ G. Der Sahaghian, Un document arménien de la généalogie de Basile Ier. Byzantinische Zeitschrift, 20 (1911), 165—176.

«Եւ յիրաւի 867ին գահ կ'ըլլէր Վասիլ Արշակունի: — *Թուականի փոքր տարբերութիւնը ի հարկէ նկատի չառնուիր...*» (134):

*Տէր-Սահակեանի եզրակացութիւններն են. ա. Տեսիլքիս հեղինակն է Փոտ, որ գրած է զայն 886—891 տարիներուն Հայոց Գորգոն վանքին մէջ: բ. Տեսիլքին մէջ ակնարկուած արշակունի թագաւորն է Վասիլ Ա. կայսրը:*

*Ինծի կը թուի թէ Տէր-Սահակեան իր հաշուին մէջ հարիւրաւորով մը սխալած է, երբ Տեսիլքին 350ը անծանօթ թուականով գումարելով կը հանի 886 տարուոյ: Ս. Սահակ իր Տեսիլը կ'ընդունէր առ անդամ 400ին. արդ գումարելով 400 + 350 կը ստանանք 750, թուական մը, որ հեռու է Վասիլ Ա.ի գահակալութենէն ոչ «փոքր», ինչպէս կ'ըսուի, այլ* մեծ, *117 տարուոյ անջրպետով: Բնականաբար այսպիսի խախուտ հիմքի վրայ կառուցուած ամէն շէնք կը կորսնցնէ իր հաստատութիւնը: Անհրաժեշտ հարկ չկայ ենթադրելու, թէ Սահակայ Տեսիլքը ծանօթ էր Կոստ. Ծիրանածնի* յունարէն *թարգմանութեամբ. Կոստանդին ունէր իրեն խորհրդակից հայեր, որոնք կրնային հաղորդած ըլլալ իրեն նաեւ Տեսիլքիս գոյութիւնը:*

29. *Հ. Գրիգոր Սարգիսեան*[20] *մանրակրկիտ քննելով հայ մատենագրութիւնը կը հանի այն եզրակացութեան թէ Ե.—Թ. դա-*

---

[20] *Հ. Գ. Սարգիսեան, Տեսիլ Ս. Սահակայ Պարթեւի. Բազմավէպ*, 1931, *էջ* 529—532 *եւ* 1932, *էջ* 12—16:

րու. Հայ մատենագիրներուն անծանօթ է Տեսիլքս : Ղ. Փարպեցւոյ Պատմութեան մէջ յիշատակուած է այն : Մ. Խորենացի կարդացած չէ զայն. ակնարկութիւնն Տեսլեան մասին ուրիշ ձեռքէ է. նոյնպէս Թովմաս Արծրունւոյ Պատմութեան մէջ : Իր «կարծիքն» է. «Տեսիլքը Հնարելու մէջ՝ ես երեք շրջան, երեք ձեռք, երեք խմբագրութիւն կը նկատեմ : Մին՝ անոր կմախքը, կորիզը, կամ լաւ եւս՝ հիմը դրած է. միւսը՝ վրան նոր գաղափար մ'աւելցուցեր է, իսկ երրորդը՝ այժմեան կերպարանքն է տուած անոր : Առաջինը՝ Փարպեցիէն շատ ուշ է, Է. դարուն կար : Երկրորդը՝ Ը. դարուն է. Երրորդը՝ Թ. դարուն : Առաջին խմբագիրը՝ Գրիգոր Սարկաւագապետն է (654—660). Երկրորդը՝ կրօնաւոր մը (742). Երրորդը՝ Փոտ :

«Առաջին խմբագիրը. ...Ներսէսի անէծքը, Սահակայ անզաւակ, գահազուրկ եւ վշտացած գիրքի մէջ մահը դիտելով... իբր ազգային մարգարէութիւն մը, Տեսիլքի մը մէջ խտացուց՝ ու Սահակայ սրբազան անուամբն հրատարակեց : Այսպէս ահա ծնունդ առաւ Տեսլեան նախնական եւ համառօտ ձեւը, ինչպէս կը գտնենք զայն յոյն թարգմանութեան մէջ՝ որմէ անցած է նաեւ Մովսէս Խորենացւոյն պատմութեան :

Երկրորդ մարգարէին կամ խմբագրին երեւակայութիւնը, ինչպէս Ղեւոնդ մեզի բացատրեց՝ Բագրեւանդայ կռիւը տաքցուցեր է : Աս ալ յաւակնեցաւ յախուռն տեսիլքով

մը Հայ ազգին նորոգուելիք թագաւորութիւն մը քարոզել, որ յետոյ նախորդին հետ բարդուելով՝ նոր գաղափար մ'աւելցուց անոր վրայ:

«Երրորդ խմբագրութիւնը... նախորդներուն յղացած գաղափարները միացուց՝ ու նոր մ'ալ անոնց վրայ աւելցուց· հայրապետական գաւազանին վերընձիւղիլը: ... Նա խորամանկ հմտութեամբ կը ճշդէ ժամանակը, եւ վստահ գուշակութեամբ կը ստուգէ նորոգուելիք (Արշակունի) թագաւորութիւնն ու հայրապետական (Պահլաւ) գահը: ... Ո՞վ կրնար այդպիսի յանդուգն քայլ առնել եւ յաջողութեամբ գլուխ հանել: Մի միայն Փոտ: ...Արշակունի էր թագաւորը [Վասիլ Ա.], Պահլաւախառն արշակունի նաեւ Ստեփան հայրապետը՝ արքայորդին: ...Ժամանակն որոշելու մէջ ալ շատ արթուն է նա· այդ ամէն բան պիտի կատարուի՝ «Մեծ յերեւումն պղծոյն անապատի», այսինքն՝ Ս. Սահակէն 350 տարի վերջ· արդ 350 + 500 = 850, ճի՛շդ (!) Վասլի կայսրութեան ժամանակ: ...

«Տեսիլքին հայերէն վերջնական խմբագրութիւնը Ժ.—ԺԱ. դարուն կը համարիմ, քանի որ մինչեւ այդ ժամանակ մեր մատենագրաց ծանօթ չէ եղած, ինչպէս վերեւ ցոյց տուի»:

Սահակի Տեսիլքի այս «հնարագէտ» առեղծումը բազմօք կը գլէ Փոտի «հնարագիտութիւնը»: Diegesis գրութեան հեղինակը կ'ենթադրէր Սահակի Տեսիլը. Հ. Սարգի-

սեան այդ հեղինակը կը ներկայացնէ Տեսիլքին առաջին խմբագիրը՝ «Գրիգոր սարկաւագապետ» անուամբ: Ղեւոնդ երէց կը յիշէ, թէ 772ին (ո՛չ 742ին) «Տեսիլս սուտս պատմէր» Մոնոգոն մը, յուսադրելով, թէ «ընդ հուր դարձցի գաւազան թագաւորութեանն միւսանգամ ի տուն Թորգոմայ»: Եւ այս Մոնոգոնը կ՚ըլլայ Սահակայ Տեսլեան երկրորդ խմբագիրը: Բայց Ղեւոնդի բառն է, թէ Մոնոգոնը իր տեսած տեսիլները կը պատմէր եւ ոչ յանուն Սահակայ կը խօսէր: Շատ շատ կարելի էր ատկէ հետեւցնել, թէ Մոնոգոնը ծանօթ Սահակի Տեսիլքին՝ ի մասին Արշակունեաց գահին խօսքերը կը մերձեցնէր իր ժամանակին: Ի մասին Փառայ կը գործէ նաեւ Սարգսեան հայրը այն սխալը, զոր Տէր-Սահակեան գործած էր: Ս. Սահակ վախճանած է 438ին. իսկ Տեսիլը տեսած էր եպիսկոպոսութենէն յառաջ, ուստի յամենայն դէպս 400էն յառաջ. ի՞նչ հիմամբ 350 տարիները բացատրելու համար ելակէտ կ՚ընտրուի 500 թուականը «ճիշդ» 850ը լրանալու համար:

Ինձ կը թուի թէ ձախողած է Հ. Սարգսեան իր «կարծիքին» մէջ:

30. Ն. Ադոնց[21] առթիւ իր ուսումնասիրութեան նուիրած «Վասիլ Հայկազն»ին, կը գրէ. «Սահակի տեսիլի աղերսը Վասիլի թագաւորելուն աւելի քան խորհրդաւոր է:

---

[21] Հայրենիք, 1931, Թ. 11, էջ 120—123:

Շատ կարեւոր է բանասիրական տեսակէտից եւ պէտք ունի յատուկ ուսումնասիրութեան։ Խնդիրը կնճռոտ է։ Վասիլ գահ բարձրացաւ 866ին։ Այստեղից 350 տարի յետ հաշուելով, կը ստանանք 516 թիւը, այն ինչ Սահակ ապրում էր մի դար յառաջ»։ Սահակ Տեսիլքն ունեցաւ 400ին․ ուստի 350 տարին կը հանէ զմեզ 750ին։ Այս դարուն մեր ուշադրութիւնը կը գրաւէ Մոնոզոնը, զոր կը յիշէ Ղեւոնդ 772ին, իբրեւ արաբական լուծէ ազատագրութեան քարոզիչ։ «Հիմք կայ կարծելու որ այս ամենները յօրինուած լինի մեզ հետաքրքրող տեսիլը Ս. Սահակի անունով» (121)։

«Վասիլի շրջապատում, գլխաւորապէս Փոտի ջանքերով, փորձել են տեսիլը յարմարեցնել Վասիլի դէպքին եւ նրանով հիմնաւորել նոր կայսրի Արշակունի ծագումը։ ... Ուրիշ խօսքով Փոտին վերագրուած գաղտնի գրութիւնը ... այլ բան չէր եթէ ոչ Սահակի տեսիլը, որ յօրինել էր գիտուն պատրիարքը ցոյց տալու համար, որ Վասիլը արքայական եւ այն՝ պարթեւական ծագում ունէր եւ արժանի էր իրեն վիճակուած մեծութեան։ Այս կեղծիքը Փոտը կատարած պիտի լինէր 867—875 տարիների ընթացքում...։ Այս պարագային 350 տարուան խնդիրը պէտք է լուծել թերեւս հետեւեալ հաշուով։ Վասիլի ծննդաբանութեան մէջ Արշակունեաց անկումը եւ Արտաւանի եւ Կիլէնի փախուստը կատարուած է համարում Լեւոն կայսեր (457—

474) օրով։ Վարդանանց պատերազմի կալանաւորների դարձը տեղի ունեցաւ Պերոզի Ե. տարին, որ է 462 Թ. Հաւանական է, որ յիշեալ Արշակունի իշխանների փախուստը նոր խլրտումների հետեւանքով վերաբերում է 462 թւին։ Արդ այս թւից հաշուելով 350 տարին, կը գանք մինչ 812 թուականը, այսինքն՝ Վասիլի ծննդեան աւանդական տարին։ ...Այս կերպով կարելի էր 350 թուի կնճիռը փակուած հաշուել...» (121)։ Եւ որովհետեւ այս լուծման կը հակառակէ Diegesis գրուածքը, որ գրուած է Սահակ կաթողիկոսի (677—703) օրով, եւ կը յիշէ Տեսիլքը, այս դժուարութիւնը լուծելու համար կը գրէ Ադոնց. «մենք աւելի հաւանական ենք համարում, որ երկու գրութիւններն էլ թարգմանուած լինէին յունարէնից Փոտի ժամանակ Շիրակաւանի ժողովի առթիւ։ Փոտի թուղթը Զաքարիա կաթողիկոսին գրուած է 875 թւին, այսինքն՝ նոյն տարին երբ Նիկիտ Ներքինին եկաւ Աշոտ իշխանի մօտ։ ...Սահակի տեսիլը ծանօթ է Նմանապէս Խորենացուն...։ Եթէ տեսիլը Փոտի գործ համարուի, յօրինուած 867—875 տարիներին, պարզ է որ Խորենացու պատմութիւն չէ կարող այդ թւից կանուխ լինել։ Սակայն, զգուշանալու է հապճեպ հաստատումներից։ Տեսիլը բանաստեղծական կարեւորութիւն ունի եւ հարկ է որ նախապէս ուսումնասիրուի իր բոլոր մանրամասնութեամբ»։

31. *Մաղաքիա արքեպ. Օրմանեան*[22] *կը գրէ. «Տեսիլքը բովանդակ կը դառնայ մերձաւոր ժամանակներու [Ե. դարու] եղելութեանց վրայ...: Աւելի հեռու ժամանակներու կամ Երկրորդ Գալստեանց վրայ ակնարկ մը չենք տեսներ այդ տեսիլքին մէջ: Ինչ որ ընդհանրապէս տեսիլքներու համար կ՚ըսուի, ասոր համար ալ կրկնուած է, թէ եղելութեանց կատարուելէն ետքը յերիւրուած են: Բայց այդ առթիւ, կամ պէտք էր Փարպեցին մեղադրել, եւ կամ Սահակը առասպելաբան մը համարել. եւ մենք փաստ մը չունինք ոչ մէկին բերելու եւ ոչ միւսը հաստատելու»:*

32. *Հ. Վարդան Հացունի կը գրէ*[23]. *«Արդարեւ Հայոց արքունի նշաններէն մին եւս էր գունդը, յիշատակուած Ս. Սահակայ Տեսլեան մէջ,* որ դատելով իր բնիկ լեզուէն, հնարուած է միջին դարուն՝ հաւանօրէն Բագրատունեաց տէրութեան սկիզբը, *երբ մեր թագաւորք Բիւզանդացի եւ արեւմտեան արքայից նմանութեամբ ոսկի գունդ մը կը կրէին ի ձեռին»:*

*Եւ այլուր*[24] *կը գրէ դարձեալ. «Ս. Սահակայ Տեսիլն ալ, որ հնարուած է* Բագրատունեաց *թագաւորութեան շրջանին. որովհետեւ կը գուշակէ Արշակունեաց գահուն*

---

[22] *Ազգապատում, Ա.,* էջ 260—261:

[23] *Հին գրոշները պատմութեան մէջ. Բազմավէպ* 1919, էջ 40:

[24] *Պատմութիւն հին հայ տարազին. Վենետիկ* 1923, էջ 187:

կործանումն ու վերականգնումը, եւ նորոգումը կաթողիկոսական աթոռին «ի շառաւիղէ սրբոյն Գրիգորի», որ են Պահլաւունիք. եւ ԺԲ. դարուն արդէն կայ եւ ծանօթ է ժամանակի գրողաց[25]: Արդ՝ ադար մէջ կը յիշուի «գունդ մի ոսկի բոլոր», որ «նշանակէ զթագաւորութիւնն»: Բիւզանդական գունդն է՝ զոր տեսանք <էջ 168>: Եւ եթէ Հայոց թագաւորութիւնն ալ կը յիշեցնէ անոնց, ապա այդ շրջանին ընտանի լինելու է նաեւ Հայոց, եւ յատկապէս գործածուելու էր օծման ատեն՝ բիւզանդական տարազին հետ, թէեւ կարգը կը լռէ»:

33. Այս բազմազան կարծիքներէն ոմանք չափաւոր են եւ ընդունելի ինչ ինչ մասերու մէջ, եւ ոմանք չափազանց եւ այս պատճառաւ ալ մերժելի:

Մերժելի են Տէր-Սահակեանի, Սարգիսեանի, Ագոնցի եւ Հացունիի տեսութիւնները եւ եզրակացութիւնները: Փաստ ոչ մի մասնակցութիւն չունի Տեսլեանս հետ եւ չէր ալ կրնար ունենալ: Կոստանդին Ծիրանածին եւ կամ այլ ժամանակակիցք կրնային բարեպաշտօրէն կամ քաղաքական ձգտումներով մերձեցնել Տեսիլքն Թ. դարու երկրորդ կէսի անցքերուն, ինչպէս ԺԴ. դարուն մերձեցուցած էին Աղթամարցիք Աղթամարի աթոռին եւ ԺԵ. դարուն Էջմիածնեցիք՝ Էջմիածնի

---

[25] Յու. Արծ. 353 [տե՛ս § 20]: Լամբր. Պատ. 26 [տե՛ս § 16]:

*աթոռին վերանորոգութեան: Տեսիլքը կը շրջէր հրապարակի վրայ սկսեալ Ը. դարէն. ազատ էր իւրաքանչիւր ոք հասկնալ եւ մեկնել զայն եւ մերձեցնել անցեալին, ներկային եւ ապագային:*

## Դ. ԲՆՆՈՒԹԻՒՆ ՏԵՍԼԵԱՆ

34. *Մեր քննութեան հիմ կ'առնենք այն բնագիրը, որ աւանդուած է Ղ. Փարպեցւոյ վերագրուած Ա. Դրուագին մէջ: Այն յետամուտ տարր մը չէ հոն, այլ կը կազմէ Ա. Դրուագին էական մասը: Ասկէ ծագած են ձեռագիրներու մէջ տեսնուած օրինակները: Այս բնագրով ծանօթ եղած է Սահակայ Տեսիլքը Ը. եւ յաջորդ դարերու հեղինակներուն:*

35. *Ի մերձուստ նկատելով այս բնագիրը, կը նշմարեմ հոն հետքեր, որոնք կը դրդեն զիս ենթադրելու.*

ա. *Տեսիլքի հնագոյն բնագիր մը — Սկզբնագիր:*

բ. *Ասկէ յառաջացած Տեսիլքին նախաւոր խմբագրութիւն մը հանդերձ վարդապետական Մեկնութեամբ — Ա. խմբագրութիւն:*

գ. *Տեսիլն եւ Մեկնութիւնը ենթարկուած են նոր խմբագրութեան գուշակական յաւելուածներով եւ վերագրուած հաւանօրէն Դանիէլ Ասորւոյ — Բ. խմբագրութիւն:*

դ. *Այս Բ. խմբագրութիւնը մանր փոփոխութեամբ վերագրուած է ապա Սահակայ:*

ա․ Սկզբնագիրը։

36․ *Տեսիլքը առանձին առեալ՝ առանց Մեկնութեան, կ'երեւցնէ իր մէջ ինքնայատուկ լեզու մը, որոյն ոճ եւ բարձրական գաղափարներու արտայայտութիւն մը, որոնք անծանօթ են Մեկնութեան։ Արդէն Հ․ Յ․ Գաթրըճեան նկատած էր, թէ Տեսիլքին լեզուն Ղ․ Փարպեցւոյ չէ, այլ անոր ժամանակէն հնագոյն եւ մաքրագոյն։ Այս զանազանութիւնը լեզուին կարծես թէ նաեւ խմբագիրը վեր հանել ուզած է՝ համարելով Տեսիլքը «Բան Հօր» եւ գրելով կարմրագեղ, եւ Մեկնութիւնը՝ բան Հրեշտակին եւ գրելով սեւագեղ։ Ինձ կը թուի թէ Տեսիլքս իր հարազատ մասերուն մէջ շատ հին է համեմատութեամբ Մեկնութեան, թերեւս Ե․ դարու երկրորդ քառորդէն։ Հ․ Գաթրըճեանի ըմբռնմամբ Տեսիլքս Գրիգորի Տեսլեան հետ «զոյգ մը կը կազմէ»․ կը նշմարուին հոս ձեւեր, գաղափարներ, խօսքեր եւ բառեր, որոնք «անկէ ասոր առնուած» են։*

37․ *Դժբախտաբար Տեսիլքին Սկզբնագիրը իր անաղարտ ձեւին մէջ չէ հասած մեզի։ Բ․ խմբագիրը մուծած է հոն յաւելուածներ, թերեւս նաեւ կատարած յապաւումներ. եթէ առաջինները մասամբ կարող ենք ընդգծել, չենք կրնար այժմ լրացնել յապաւուած մասերը։ Վերականգնելու համար Սկզբնագիրը կարեւոր կը համարիմ ամբող-*

*ջութեամբ յառաջ բերել Տեառն բնագիրը։ Այն մասերը, որոնք յաւելուած կը թուին ինձ, կ՚առնեմ անկիւնաւոր փակագծի մէջ։*

ՏԵՍԻԼՔԸ

Եւ ահա յանկարծակի բացաւ հաստատութիւնն երկնից [1], ընդ որ ծագեաց լոյս[ն] սաստիկ եւ ելից զամենայն երկիր [2]։ Եւ [կանգնեալ] երեւեցաւ ինձ յերկրի բեմբ չորեքկուսի ամպեղէն, որոյ բարձրութիւնն հասանէր մինչեւ յերկինս [3]. եւ լայնութիւնն տարածեալ լնոյր զամենայն երկիր։ Եւ ի վերայ բեմբին երեւէր տեսրասկեղ յոսկւոյ սրբոյ՝ խորանարդ, [ըստ արժանի սպասաւորութեան Տեառն,] ծածկեալ [յոյժ] բարակ կտաւով [սպիտակափայլ գունով]։ Եւ ի վերայ խորանա<րդ>աձեւ ծածկութին (տպ. ծածկութեան) [յայտնապէս] նշան տէրունական խաչին երեւէր [4], [որոյ երեւելութիւնն ոչ նիւթեղէն, այլ լուսեղէն ցուցանիւր]։

Եւ յանկարծակի եղեւ շնչիւն խաղաղասիգ օդոյ. եւ բացաւ փեղկ մի ծածկութի կտաւոյն, ընդ որ հայեցեալ տեսի, եւ ահա կայր ի վերայ բեմբին սեղան չորեքկուսի ա-

---

[1] *Ագաթ.* 382. «Յանկարծակի *եղեւ ձայն...* *եւ* բացաւ *խորանաչէն յարկն* հաստատութեան երկնից... *տեսի* բացեալ զհաստատութիւն երկնից»։

[2] *Ագաթ.* «*Եւ* լոյսն *հասեալ վերուստ մինչեւ յերկիր հասանէր*»։

[3] *Հմմտ. Ագաթ.* «*Սիւն մի հրեղէն բարձր մինչեւ յոյժ*»։

[4] *Ագաթ.* «*Եւ խաչն լուսոյ ի վերայ նորա*»։

կանակապ ի բազմազունի ականց պատուականաց ընդելուզեալ: Եւ ի վերայ սեղանոյն կայր հաց մի սուրբ եւ ողկոյզ մի խաղողոյ [ըստ պատուականութեան խորհրդոյ երկնաւոր փրկութեան]:

Եւ մերձ ի սուրբ խորհուրդն երեւէր [ծառ մի] ձիթենի վարսաւոր, պտղալից [յոյժ], զորոյ ոչ կարէի առնուլ զչափ բարձրութեանն եւ զլայնութեանն. որոյ բերն էր բազմապտուղ եւ առոք, եւ տեսիլն եւ գեղեցկութիւն անպատում [եւ] սքանչելի[5]:

Եւ որոշեալ չորք ոստք ձիթենւոյն ի խոնարհ կողմ<ն> երկրի ձկտեալ մօտէին. որոց երեք ոստք միաչափք [եւ հասարակապտուղք երեւէին.] եւ չորրորդն [ի նոցանէ] որպէս կիսաբաժին [եւ նուազապտուղ] ըստ երկայնաչափութեան երիցն երեւէին: Եւ պտուղք չորեցունց ոստոցն ոչինչ քնաւ էին նմանք եւ կամ հաւասար<ք> [պտղաբերութեան պտղաբոյծ] առոքութեանն այլ պտղոցն[6] ձիթենւոյն, այլ նուազք [առաւել թուով] եւ վտիտք [առոքութեամբ,] որպէս թէ ծնկեալք էին:

Եւ ընդ ահեկէ բեմբին տեսի աթոռ մի բարձր չորեքկուսի՝ ծովազոյն սառնակերպ եւ ծածկեալ թանձր կտաւով [թխազունիւ]: Եւ վերացեալ կտաւն ի շնչմանէ քաղցր օդոյն

---

5 *Ագաթ. «Տեսիլ աստուածակերպ սքանչելի անպատում»:*

6 *Տպ. պտղոյն: Կարդա՛* այլոց պտղոց:

[եկելոյ]՝ տեսի, եւ ահա սկուտղ[7] արծաթի մեծ ի վերայ աթոռոյն: Եւ ի վերայ սկտեղն կայր նափորտ մի բեհեզեայ ծալեալ [եւ եղեալ եւ առ նմին զունդ մի ոսկի բոլոր] եւ մագաղաթ [հաստուածաձեւ] չորեքկուսի, գրեալ [ի սկզբանն կարգս ինչ սակաւ[8] ոսկետեսիլ գրով սքանչելապէս իբր թէ] ձեռամբ գրչի ճարտարի:

*[Եւ ի միջոյ կողմանն մագաղաթին՝ հեռի յոսկէգիր կարգացն՝ երեւէին այլ կարգք ինչ եղծեալք ջնջագիրք, որոց ոչինչ բնաւ երեւէր տեսիլ գրոյն եւ կամ կերպարան: Եւ հուսկ յեզր մագաղաթին, հեռի ի ջնջագիր կարգացն դարձեալ տեսանէի այլ եւս կարգ մի եւ կէս կարգի՝ գրեալ ոսկեգիր գրով առաւել սքանչելապէս, քան տեսոյ առաջին կարգացն գրելոց ի սկզբանն մագաղաթին: Եւ կիսագիր կարգին[9] մինչեւ ցմիջոց գրոյն՝ եւս առաւելագոյն էր ոսկւով եւ այլն կարմրադեղով էր**: Եւ կային շուրջ զծնօտիւք սկտեղն[10] անթիւ բազմութիւնք տղայոց արուաց. այլ սակաւ եւ իգաց. ամենեքեան պայծառացեալք լուսազգեստք էին. բայց ճառագայթք փայլատակման պատմուճանաց նոցա է՛ր որ կարմրագոյն արձակէին նշոյլս եւ է՛ր որ այլ երփն երփն եւ գոյնս ազգի ազգիս երե-

[7] Տպ. սկուտեղ:
[8] Կարդա՛ կարգք ինչ սակաւք:
* Անկէ մինչեւ տ. 66 երկրորդ խմբագրէն է:
[9] Կարդա՛ «ի կիսագիր կարգէն»:
** Անկէ ցվերջ՝ Գ. խմբագրէն:
[10] Տպ. սկուտեղն:

ւէր[11]: Եւ դէմք ամենեցուն ի սուրբ սեղանն հայէին՝ չդարձուցեալ բնաւ ուրեք զաչս իւրեանց ի խորհրդոյն փրկութեան[12]: Եւ սկսաւ յանկարծակի սաստկապէս դղրդմամբ շարժել աթոռն: Եւ զմանկտին (sic), զոր տեսանէի ի տիս տղայութեան՝ առժամայն վաղվաղակի փոփոխեալք ի հասակ երիտասարդութեան՝ կատարեալք լինէին, եւ եղեալք թեւազգեցիկք՝ ի վեր ի սուրբ սեղանն՝ որ էր ընդելուզեալ ի բազմազունի ականց՝ թռուցեալ բնակէին եւ զՍուրբ Աստուածն երգէին: Եւ համբարձեալ սուրբ սեղանն հանդերձ նոքօք ի վեր քան զբարձրութիւն հաստատութեան երկնից ծածկէր]:

38. *Ինչպէս Գրիգորի Տեսլեան նոյնպէս այս Տեսիլքիս նիւթն է կաթողիկէ Եկեղեցին: Հոս Եկեղեցւոյ խորհրդաւոր պատկերը կը գծուի, նկատի առնելով անոր աստուածակերտ հիմնարկութիւնը, Պատարագի խորհուրդը, Ս. Հոգւոյն շնորհաբաշխումը, քահանայութիւնն եւ բանին քարոզութիւնը:*

Ա. Խմբագրութիւն:

39. *Տեսիլքին այս պատկերը քաջ ըմբռնած է առաջին Մեկնիչը Ա. Խմբագրութեան մէջ. որ եւ մեկնած է ըստ հասկացողութեան,*

---

11 *Իմացի՛ր «եւ էր որ երփն երփն գոյնս» արձակէին: Բնագիրը անմտօրէն ընդարձակուած է:*

12 *Տես եւ վերագոյն «խորհրդոյ երկնաւոր փրկութեան». խմբագրչի արտայայտութեան ձեւն է:*

*վարդապետական ոճով, առանց ձգտելու ի վեր հանել հոն մարգարէական գուշակութիւններ ապագայ գլխոց մասին։ Անիկա նկատի ունի Տեսիլքը մինչեւ տող 54, այսինքն մինչեւ արծաթի սկսեալ երեւումը։ Այս տեղւոյս կը վերաբերի «եւ տեսիլդ ի փախճան է»* (§ 40)*։ Խմբագրիս լեզուն պարզ է, առանց դասական նկարագրի։ Հմուտ է Մեկնիչը աստուածաբանական ուսմանց, կարդացած է ի մէջ այլոց Սաղմոսաց Մեկնութիւն մը։ Հաւանօրէն Զ. դարու առաջին կէսէն է Մեկնիչս։*

### Բ. խմբագրութիւն։

40. *Թէ՛ Տեսիլքը եւ թէ անոր Մեկնութիւնը ընդարձակուած է մարգարէական պարբերութեանց, նաեւ հատուածներու յաւելմամբ։ Այս Բ. Խմբագիրը, ինչպէս կ'երեւայ, անփոփոխ պահած է Ա. Խմբագրի Մեկնութիւնները. բայց կցած է անոնց մարգարէական գուշակութիւններ։ Իր լեզուն չունի այն կոկկութիւնը, պարզութիւնն եւ քերականական կանոնաւորութիւնը, ինչպէս ունէին Տեսիլքն եւ Մեկնութեան Ա. Խմբագրութիւնը։*

*Ա. եւ Բ. Խմբագիրներու զանազանութիւնը երեւան հանելու համար բաւական է հետեւեալ համեմատութիւնը, ուր Տեսլեան մի եւ նոյն տեղիքները մեկնուած են վարդապետական եւ մարգարէական ուղղութիւններով.*

Ա.

1. Եւ ընդ աՀեկէ բեմբին, որ ցուցաւ քեզ աթոռ չորեքկուսի ծովագոյն սառնակերպ [զնստուցմն դաՀու քաՀանայութեանն եւ թագաւորութեանն ցուցանէ, զոր արդարեւ Բանն Աստուած Հաստատէ], յորոյ վերայ կայր սկուտ[ե]ղն արծաթի: Քանզի իբրեւ զարծաթ ընտիր եւ փորձ [լուսափայլ] յամենայն ազգս ընդունողաց սփռեալ տարածեցաւ բանն. զոր եւ սաղմոսերգ<ու>ն վարդապետէ սուրբ Հոգւոյն յասելն, թէ «Բանք Տեառն որպէս զարծաթ ընտրեալ եւ փորձեալ յերկրէ»: Եւ զասելն «յերկրէ» գիտասցես, եթէ զերեւումն Որդւոյն Աստուծոյ մարմնով ի սուրբ կուսէն յայտ առնէ մարգարէն (33, 27—34, 3): <Եւ Տեսիլդ ի վախճան է>:

Բ.

1. Եւ զի երեւեցաւ քեզ ծովագոյն սառնանման տեսիլ աթոռոյն՝ նշանակեալ ցուցանէ զծփումն ալէկոծութեան աշխարՀիս Հայոց: Քանզի եւ թխագոյն թանձր կտաւոցն ծածկումն՝ զօրինակ բերէ զթանձրամած սգոյն, որ ունելոց է զաշխարՀս ամենայն. [վասն զի Տեսիլդ ի վախճան է]:

2. Եւ նախորտն բեՀեզեայ, զոր տեսանէիր ծալեալ եւ եդեալ ի վերայ սկտեղն եւ զունդն ոսկի որ կայր մերձ նախորտանն <զնստուցմն դաՀու քաՀանայութեանն եւ թագաւորութեանն ցուցանէ. զոր արդարեւ Բանն Աստուած Հաստատէ>. նշանակէ մինն զքաՀանայութիւնն եւ միւսն զթագաւորութիւնն: Եւ զի ոչ ոք էր որ արկեալ էր զիւրեաւ զնախորտն, եւ ոչ այն ոք էր որ զգունդն ունէր ի ձեռին՝ լուր ստուգապէս, զի լռեսցէ մերձ ընդ մերձ թագաւորութիւն յազգէդ Արշակունեաց եւ քաՀանայութիւն ի ցեղէ արժանաւոր քաՀանայապետին Գրիգորի:

Յ. Եւ զի տեսեր զպտուղ ոստոյն թառամս եւ ծընկեալս եւ ոչինչ բնաւ նմանս այլ պտղոյն որ ի ձիթենւոջն էին, տե՛ս ճշգրտապէս եւ ծանիր, զի բարձեալ է սէր եւ արդարութիւն յամենայն մարդոց, որք ստութեամբ եւ ոչ ստուգութեամբ կարծեցուցանեն զանձինս սիրուն եւ պատուիրանապահս. Եւ այն յայտնի գրեալ կայ եւ կնքեալ ի դպրութեան ամենագիտին Աստուծոյ, որ ներէ երկայնմտութեամբ եւ հատուցանէ անաչառութեամբ (33, 20—26):

Յ. Եւ ոստք չորք ձիթենւոյն, որ ի խոնարհ կողմն երկրի ձգտէին՝ երեւելոյն երեք ոստք հասարակատեսք չափով, եւ այն առաւել միաթիւք պտղովք, եւ չորրորդն ի նոսա՝ զոր կիսաչափ ըստ հասարակութեան երիցն եւ պակասաւոր ըստ պտղաբերութեանն տեսեր, որոց չորեցունց պտուղքն փախոք էին եւ թառամք եւ բերքն պակասք եւ աննմանք քան զայլ առոքատեսիլ պտուղս ձիթենւոյն: Արդ ամփոփեա զունկնդրութիւն մտաց քոց եւ լուր եւ ասացից քեզ զոր ինչ սահմանեալն Բարձրելոյն. յայտնեալ մինչեւ ի վախճան աշխարհի՝ երեք տասներեակք ամաց եւ կէս տասներեկի համառօտեսցի ի վերայ ամենայն աշխարհի. մինչեւ յերեւումն պղծոյն անապատի, զոր Դանիէլ մարգարէի ասացեալ է սուրբ Հոգւոյն. եւ լինին սոքա յայտնապէս թուով ամք ՅԾ, ըստ միագոյն պտղոց երից ոստոցն եւ կիսոյն (33, 11—20):

Այս համեմատութիւններէն յայտնապէս կը տեսնուի, թէ Ս. Մեկնիչը ինչպէս Տեսիլքի նախորդ մասերը, նոյնպէս այս կէտին,

Տեսիլքին հարազատ հատուածները մեկնած է վարդապետական-բարոյական տեսակէտով։ Բ. Մեկնիչը կը փնտռէ մի եւ նոյն հատուածներու մէջ մարգարէական գուշակութիւններ, եւ կը մեկնէ հրեշտակի բերնով ապագային տեղի ունենալիք դէպքերը, ուրիշ խօսքով կը մերձեցնէ Տեսիլքի տեղիքները արդէն տեղի ունեցած անցքերու եւ դէպքերու։ Ասկէ դիւրին է հետեւցնել, թէ անոր, Բ. Մեկնիչին գրչէն ներմուծուած են Տեսիլքին մէջ այն գուշակական հատուածները, որոնք թէ ըստ բովանդակութեան եւ թէ ըստ լեզուին անհարազատ են Տեսիլքի կառուցուածքին։

Այս Բ. Մեկնիչն է Ա. 3 հատուածին մէջ մուծուած «գնատումն — հաստատէ», զոր փոխադրեց Բ. 2։ Իսկ Բ. 1 հատուածին «Տեսիլդ ի վախճան է» ինծի կը թուի թէ կը պատկանի Ա. Մեկնիչին (Ա. 1). վասն զի Տեսիլքին Սկզբնագիրը կ՚ակնարկէր առանց տարակուսի «արածթի սկսեղ» երեւման, որուն վրայ պէտք է ենթադրել անշուշտ «նափորան» եւ «մաղաղաթ»ը, նշանակ քահանայութեան եւ աւետարանական քարոզութեան, որոնց մեկնութիւնը Ա. 1 համառօտուած է այժմ։

41. Սկուտղի վրայ տեսնուած «գունդ մի ոսկի բոլոր», Բ. Խմբագրի յաւելուածը կը համարիմ։ Այս գունդը ըստ Բ. 2. «նշանակէ ... զթագաւորութիւնն». եւ որովհետեւ «ոչ այն ոք էր որ զգունդն ունէր ի ձեռին», կը մեկնուի թէ «լինեցէ մերձ ընդ մերձ թագա-

ւորութիւն յազգէդ Արշակունեաց»։ Եւ քիչ յետոյ ալ կ՚ըսուի թէ վասն զի «յայտական երեւմամբ կայր գունդն», «ծանիր հաւաստեաւ, զի մերձ յերեւումն պղծոյն անապատ բարձեալ յառնէ թագաւոր յազգէդ Արշակունեաց» (34)։

Բոլորակ ոսկի գունդին խորհրդական նշանակութիւնը, որով «թագաւորութիւնը» կ՚իմացուի, կը յիշեցնէ ինձ Սոյն Կալլիսթենէսի Աղեքսանդրի վարուց պատմութեան հետեւեալ տեղիքը. երբ Դարեհ Աղեքսանդրի մանկական հասակը ծաղրելու համար ուղարկած էր անոր փոկ եւ գնդակ, Աղեքսանդր իր պատասխանին մէջ կը գրէր. «Եւ զոր առաքեցերն փոկ եւ գունդ եւ արկղիկ ոսկւով, դու ինձ առաքեցեր զայս իբրեւ խաղ զիս առնելով. բայց ես զայս իբրեւ բարի նշանակ առեալ ընկալայ... Զգունդդ զոր առաքեցեր, նշանակեցեր ինձ տիրել բոլոր աշխարհիս, զի գնդաձեւ <եւ> բոլորակ է աշխարհս»[13]։ Գունդի նմանութիւնը «գնդաձեւ եւ բոլորակ աշխարհի» հետ եւ անոր խորհրդական նշա-

[13] Այսպէս համաձայն Վիեննայի Մխիթ. Մատ. թ. 947, թղ. 38ա ձեռագրին. Վենետիկի տպագիրն կը կարդայ. «Առաքեցեր ինձ ընծայս փոկ եւ գունդ եւ արկղիկ ոսկւով. դու ինձ զայս ետուր... եւ զգունդս որ նշանակեցեր ինձ իբրեւ թէ զաշխարհս հասեալ կալայց յիշխանութեան, քանզի... աշխարհս» (էջ 53—54)։ Յն. τῇ δὲ σφαίρᾳ ἐσήμαινάς μοι, ὡς τοῦ κόσμου περικρατήσω· σφαιροειδὴς γὰρ καὶ στρογγύλος ὑπάρχων ὁ κόσμος. Historia Alexandri Magni (Pseudo-Callisthenes), vol. I. Recensio vetustra, ed. G. Kroll, Berlin 1926, p. 43.

նակութիւնը աշխարհակալութեան կամ թագաւորութեան կ'երեւայ թէ շատ հին է: Կը տեսնենք «ոսկի գունդին» գործածութիւնը այս իմաստով նաեւ Հռովմէական եւ Բիւզանդական կայսերաց դրամներու վրայ: Բ. Մեկնիչը ոսկի գունդին տիեզերակալութեան կամ թագաւորութեան գաղափարանիշ ըլլալը ուղղակի Բիւզանդակա՞ն դրամներէն ուսած է, թէ Աղեքսանդրի Պատմութեան հայերէն թարգմանութենէն. կը մնայ խնդրական:

Այս Մեկնիչը հաւանօրէն Զ.—Է. դարու հեղինակ է, անիկա ապրած է ժամանակ մը, երբ Հայոց քով ընդունուած էր «Սուրբ Աստուած» երիցս սրբասացութիւնը: Պարագայ մը, որ առ կանուխ Զ. դար կը տանի զմեզ: Տեսիլքին վերջաւորութեան կ'ըսուի թէ մանկտին կատարեալք եղեալ «զսուրբ Աստուածն երգէին»: Խօսքը «Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ» երգին մասին է: Յովհ. Դամասկացի եւ այլք միաբան կը հաստատեն թէ Երգս առաջին անգամ Պրոկղ հայրապետ մուծած ըլլայ Կ. Պոլսոյ Եկեղեցւոյ մէջ 446ին, առթիւ այս թուին տեղի ունեցած երկրաշարժին: 451ին Քաղկեդոնի ժողովը վաւերացուց Երգիս հրապարակային գործածութիւնը: 481ին Պետրոս Թափիչ Անտիոքի պատրիարքը կցեց Երգիս «Որ խաչեցար վասն մեր» յաւելուածը. որ առիթ տուաւ Զ. դարուն մեծամեծ վիճմանց[14]:

[14] Dictionnaire de Théologie, par l'abbé Bergier. t. IV, p. 618 (s. v. Trisagion).

Հայոց Եկեղեցին որդեգրեց զայն Զ. դարու առաջին կէսին, միջնորդութեամբ Մխարնեայ Ասորիներու: Երգին առաջին յիշատակութեան կը պատահիմ «Ասորեաց ուղղափառաց» առ Ներսէս Աշտարակեցի (548—557) գրած թղթին մէջ. «Եւ այսպէս փառաբանեմք. Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ» (Գիրք Թղթոց, 53): Այս տաղերը կը կրկնեն բառ առ բառ Ներսէս կաթողիկոս իր պատասխանին մէջ (անդ, 56) եւ Աբդիշոյ եպիսկոպոս (անդ, 69) եւ Յովհ. Գաբեղենեցի իր առ Աղուանս գրած թղթին մէջ (անդ, 83): Է. դարուն ընդունուած էր այն արդէն հաստատակաց աղօթքներու շարքին: Վրթանէս Քերթող իր Պատճառք չորից ժողովոցն գրութեան մէջ (անդ, էջ 123) կը գրէ այսպէս. «Նոյնպէս եւ երիցս սրբասացութեամբ Որ խաչեցար հրամայեցին մեզ ասել անդադար յարձակ աւուրս առաւօտու եւ երեկոյի. Իսկ ի Յարութեանն առաւօտու եւ երեք ժամու եւ երեկոյի երիցս սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ: Իսկ բազումք հանդերձ բնակչօք սորոյ քաղաքին ոչ կացին ի Նիկիական սահմանին եւ ուրացան զհրաշալի խոստումն եւ զանձառ միաւորութիւնն... եւ վասն այնորիկ ոչ ի հաստ ինչ նստին եւ ոչ ի սրբասացութեանն Որ խաչեցար ասեն...»:

43. Ա. եւ Բ. Մեկնիչներու տարբերու-

թիւնը մեր հանելու համար ուշադրաւ է հետեւեալ տեղիքն ալ, զոր տեսանք արդէն վերագոյն յառաջ բերուած համեմատութեան մէջ:

Տեսիլքին մէջ կ՚ըսուէր. «Տեսի աթոռ մի բարձր չորեքկուսի, ծովագոյն սառնակերպ» (29): Ա. Մեկնիչը յառաջ բերած էր տեղիքս անփոփոխ. «աթոռ չորեքկուսի ծովագոյն սառնակերպ». իսկ Բ. Մեկնիչը վերածած էր զայն «երեւեցաւ քեզ ծովագոյն սառնանման տեսիլ աթոռոյն», որ «նշանակեալ ցուցանէ զծփումն ալէկոծութեան աշխարհիս Հայոց»: «Ծովագոյն սառնանման» բառերը ներշնչած են իրեն երեւակայել ծով եւ ալէկոծութիւն. վասն զի չէ հասկցած «ծովագոյն սառնակերպ» բառերուն դասական նշանակութիւնը: Ծովագոյնն է հոս θαρσίς. այսպէս Դան. Ժ. 6. «մարմին նորա ծովագոյն (յն. τὸ σῶμα αὐτοῦ ὡσεὶ θαρσίς). իսկ Յովհ. Ոսկեբերանի Յովհաննու Մեկնութեան մէջ (էջ 113) կ՚ըսուի. «զծովագոյնն զծիրանին երփն երփն հարկանելոյ» (յն. τῆς ἁλουργίδος τὸ ἄνθος, այսինքն «զգոյնն (կամ զծաղիկն) ծիրանւոյն». այլուր՝ Նորագիւտ Բ. Մնաց. Բ. 7 ունինք «ծովագործ (կարդա՛ ծովագոյն) ծիրանւոյն», որ սովորական օրինակին մէջ թարգմանուած է պարզապէս «ծիրանի» համաձայն Եօթանասնից յոյն բնագրին, ուր ըսուած է. ἐν τῇ πορφύρᾳ. Յոյն θαρσὶς ուրիշ տեղեր տառադարձուած է «ակն թարշիշ» կամ «ակն թարսսայ» (հմմտ. Երեմ. ԺԹ. 2. Եզեկ. Ա. 16. Երգ Երգոց, Ե. 14 եւն):

Սառնակերպն է ըստ Իմաստ. ԺԹ. 20. «ոչ հալէին զսառնակերպ զդիւրահալ զազգ անուշակ կերակրոյն» = χρυσταλλοειδής, «բիւրեղակերպ». իսկ κρύσταλλος թարգմանուած է Եւագր, 10 «սառնազոյն», որ սովորաբար «ակն վանեայ» կը հայացուի. այսպէս Եզեկ. Ա. 22. իբրեւ զտեսիլ ական վանի = ως ὅρασις κρυστάλλου. Ես. ԾԴ. 12. զդրունս քո յականց վանեայց = τὰς πύλας σου λίθους κρυστάλλου եւ Բարսղի Վեցօրեայք, 50. «վանակն ասեն թէ ի ջուրց, որ պաղեալ խստանան... գայ ի կերպարանս ական պատուականաց»:

Ըստ այսմ «ծովազոյն սառնակերպն» է հոս «բիւրեղակերպ յակինթը». որմէ կազմուած է աթոռը:

44. Այսպէս նաեւ թէ Տեսիլքի եւ Ա. եւ Բ. Մեկնութիւններու հեղինակները տարբեր անձինք են, կարելի է տեսնել հետեւեալ համեմատութիւններէն, ուր զգալի է լեզուի եւ ըմբռնման զանազանութիւնը:

| | |
|---|---|
| 1. բացու փեղկ մի ծածկութի կտաւոյն. | 1. երաց զմասն ինչ կտաւոյն. |
| 2. մերձ ի սուրբ խորհուրդն | 2. հուպ առ տէրունական խորհուրդն |
| 3. ծառ մի ձիթենի... պտղալից.. որոյ բերն էր բազմապտուղ եւ տեսիլն ... սքանչելի. | 3. երեւումն քեզ սքանչելատեսիլ ձիթենւոյն... բազմաբեր պտղալից... զձիթենին լիապտուղ... |
| 4. երեք սուրք միաչափք եւ հաստարակապտուղք երեւէին | 4. երեւելումն երեք սուրք հաստարակատեսք չափով. եւ այն տասեւ միաքիւք պտղովք. |

5· *Եւ չորրորդ ի նոյանէ որպէս* կիսաբաժին *եւ* նուազապտուղ ըստ երկայնաչափութեան *երիցն երեւէր*:

6· *Եւ պտուղք չորեցունց սոտոյն ոչինչ ընաւ էին նմանք եւ կամ հաւասարք* պտղաբերութեան պտղաբոյծ առոգութեանն *այլոց պտղոցն ձիթենւոյն, այլ* նուազք *առաւել թուով եւ* վտիտք *առոքութեամբ, որպէս թէ* ծնկեալք *էին*:

7· *Գրեալ ի սկզբանն կարգս ինչ սակաւ* ոսկետեսիլ *գրով... եւ ի միջոյ* կողման *մագաղաթին... այլ կարգք ինչ* եղծեալք *ջնջագիրք...*:

8· *Եւ* հուսկ յեզր *մագաղաթին... տեսանէի այլ եւս կարգ մի եւ* կէս կարգի՝ *գրեալ ոսկեգիր գրով առաւել* սքանչելապէս, *ըստ տեսոյ առաջին կարգացն գրելոց ի սկզբան մագաղաթին...*

9· *Կային շուրջ գծնոտիւք սկտեղն անթիւ բազմութիւնք ադայոց... զէմք ամենեցուն ի սուրբ սեղանն հայէին*՝ չդադրմուցեալ ընաւ ուրեք զաչս իւրեանց ի խորհրդոյն փրկութեան:

5· *չորրորդն ի նոսա, զոր* կիսաչափ ըստ հասաբակութեան *երիցն եւ* պակասաւոր ըստ պտղաբերութեանն *տեսեր...*:

6· *Որոց չորեցունց պտուղքն վտիտք էին եւ* թառամք· *եւ բերքն* պակասք *եւ աննմանք քան զայլ* առոգատեսիլ պտուղս *ձիթենւոյն·· Տեսեր զպտուղս սոտոյն* թառամս *եւ ծրնկեալս եւ ոչինչ ընաւ նմանս այլ պտղոցն...*

7· *Գրեալ ի սկզբանն կարգս ինչ* ոսկեղէն *գրով ...ի միջոյ* կողմն *մագաղաթին... կարգք ինչ* խանգարեալք *եւ ջնջագիրք...*:

8· *Եւ այլ կարգն եւ միւս եւս կէս կարգին, ...գրեալ սքանչելապէս ոսկի գրով* ի ստորին եզր *մագաղաթին... ծանոյց զայս... սքանչելատեսիլ ոսկէգիր կարգովն եւ* կարգակիսաւն...

9· *շուրջ կալով* ի վերայ *արծաթի սկտեղն... տեսեր* շուրջ զաստուածային սեղանովն պարելով *զաղայսն*, չհայելով ընաւ ի սայթաքմունս անտի հեթանոսական պաշտամանն:

45. *Ուշադրութեամբ կարդալով Տեսիլքիս Բ. խմբագրութիւնն եւ անոր Մեկնութիւնը, կը թուի ինձ թէ նախնաբար իբրեւ Տեսանող նկատի առնուած է Դանիէլ սուրբ Քորեպիսկոպոս, յեցած Փաւստոս Բիւզանդեայ հետեւեալ տեղիքին վրայ, զոր յառաջ կը բերեմ իր կարեւոր մասերու մէջ.*

*«Արդ միաժողով եղեալ մեծամեծ նախարարացն եւ ի մի վայր եկեալք՝ խորհուրդս*[15] *խորհեցան, հաւանեցուցին զԹագաւորն ածել զծերունին զԴանիէլ յիւրեանց բանակն, զի ածցեն կացուսցեն զնա իւրեանց գլուխ առաջնորդ, զի նստցի նա յաթոռն Հայրապետական: ... Եւ իբրեւ մտանէր առաջի թագաւորին Տիրանայ քորեպիսկոպոսն մեծն Դանիէլ, անդէն ի ձեռն առնոյր զկշտամբութիւն յանդիմանութեանն: Սկսեալ խօսել. <Եւ> յառաջ մատուցեալ ասէր եթէ Ընդէ՞ր մոռացարուք դուք զԱստուած զարարիչն ձեր ...զձեր քարոզն եւ զհրաւիրակն, զառաքեալն, առ ձեզ եկեալն սպանէք... զի թէպէտ եւ դուք առ ձերում անմտութեանն տիրասպան ազգին խորհրդոյն հաղորդեցայք՝ Հրէից... այնպէս եւ դուք բառ նոցին օրինակի կատարեցէք: Արդ վասն այսչափ ստութեանց ձերոց եւ պղծութեանց* բարձցէ Տէր զթագաւորութիւնդ ձեր ի ձէնջ· բարձցէ եւ զքահանայութիւնդ ի ձէնջ: *Ցրուեսջիք եւ բաժանեսջիք· եւ ցրուեսցին սահմանք ձեր*

15 *Տպ. խորհուրդք.*

որպէս եւ Իսրայէլ. եւ անտէրունչք [եւ անխնամ] եւ անխնամք լինիք. եւ լինիք դուք իբրեւ զխաչինս[16] զի ոչ գոյցէ նոցա հովիւ[ք]...: Այլ զի կոչեցէք զիս երանել գալ առ ձեզ, զա՞յս ամենայն կամէիք լսել դուք յինէն: Եթէ իմ չէր զայս ամենայն պատմել ձեզ, սակայն այս ամենայն լինելոց էր ձեզ վասն սպանման արդարոյն մեծին մանգանն Յուսկանն առաքինոյն առաջնորդին ձերոյ. որ էր ի տանէն զաւակին Գրիգորոյ. զի այս ամենայն լինելոց է ձեզ, զի այսպէս եցոյց ինձ Տէր: Այլ զի յղեցէքդ առ իս, եթէ եկ կաց մեզ գլուխ եւ առաջնորդ. զիա՞րդ լինիցիմ առաջնորդ այնոցիկ, որք ոչ դառնայցեն զկնի Տեառն... Զայս բանս խօսեցաւ սուրբ ծերունին Դանիէլ քորեպիսկոպոսն առաջի թագաւորին Տիրանայ եւ առաջի իշխանացն, պետացն եւ ամենայն զօրացն: Եւ մինչ դեռ խօսէր նա զայս ամենայն՝ հրամայեալ զայրացեալ թագաւորն մին գնելով յուռ եւեթ կայր[17]»:

46. Դանիէլ իր խօսքերը Տիրանի հասցէին է ուղղած. կը պատմէ արքունական տան իրեն եղած յայտնութիւնը ապագայի մասին. իր Տեսլեան մեկնիչը ինքն է եւ համարձակ կը սպառնայ արքային: Այսպէս նաեւ Սահակի Տեսլեան Բ. խմբագրութեան մէջ հրեշտակը նկատի ունի յատկապէս Արշակունի

16 Տպ. զխաչինք:
17 Փ. Բիւզ. Գ. 14 (էջ 33—36 տպ. Պատկ.):

տունն եւ երկրորդաբար միայն Գրիգորի տունը. բառ առ բառ կը խօսի. «Լինեցէ մերձ ընդ մերձ թագաւորութիւն յազգէդ Արշակունեաց եւ քահանայութիւն ի ցեղէ արժանաւոր քահանայապետին Գրիգորի» (34). «դարձեալ յանձնէ թագաւոր յազգէդ Արշակունեաց եւ նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւեղէ սրբոյն Գրիգորի» (34): Անգամ մը նաեւ «յազգէ նախարարացդ Հայոց» (35): Ուստի երկիցս «յազգէդ Արշակունեաց», դ դիմորոշ յօդով, մինչ երբ խօսքը Գրիգորի տան մասին կ'ըլլայ, կ'ըսուի անորոշաբար. «ի ցեղէ ... Գրիգորի». «որք ի զաւակէ երանելւոյն Գրիգորի յաջորդեսցեն արժանապէս զաթոռ քահանայապետութեան» (34). «նստելոց են քահանայապետք ոմանք յաթոռ սրբոյն Գրիգորի» (34). «նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւեղէ Գրիգորի» (34). «նստի քահանայապետ արդար ի ցեղէ սրբոյն Գրիգորի» (35). «միւս եւ զաւակ նորին յաջորդեալ զաթոռ քահանայապետութեան» (35): Կը սպասուէր, որ Հրեշտակը, որ Ս. Սահակին հետ կը խօսէր, ըսէր. «զաթոռդ», «ի զաւակէդ», «ի շառաւեղէդ», «ի ցեղէդ» եւն:

Արտայայտութեան այս ձեւը կը փոխէ Հրեշտակը միայն Մեկնութեան վերջաւորութեան. «ահա յարգանդէ զաւակիդ, որ տուաւ քեզ յարարչէն» (35). «ծանոյց քեզ ... որպէս <եւ> ճշմարիտ նախնոյն քում՝ առն Աս-

տածոյ Ս. Գրիգորի[18]». ուր յայտնապէս Յուսիկի դէմքը կը ցցուի:

47. Արդեամբք ալ Դանիէլի Տեսլեան հետ հիւսուած է նաեւ Ս. Յուսիկի Տեսիլը, զոր գտած է խմբագիրը նոյնպէս Փ. Բիւզանդեայ Պատմութեան մէջ (Գ. 5, էջ 11—12 Պատկ.):

Մինչ Դանիէլ ասորի իր Տեսլեան մէջ Հայաստանի քաղաքական ապագան նկատի ունի, Ս. Յուսիկ կ'ընդունի իր Տեսլեան մէջ Հայ Եկեղեցւոյ ապագայի մասին յայտնութիւններ: Փ. Բիւզանդեայ Պատմութեան մէջ կը կարդանք. «Մինչ նա (Յուսիկ) հոգացեալ վասն իւր<ոյ> ծննդոց մնացելոց զաւակաց (տպ. զաւակին. այսինքն՝ Պապայ եւ Աթանագինեայ). եւ վասն այսորիկ հոգալով կայր յաղօթս առ Տէր. եւ երեւեցաւ նմա հրեշտակ Տեառն ի տեսլեանն եւ ասէ ցնա. Յուսիկ որդի Գրիգորի, մի երկնչիր. զի լուաւ Տէր աղօթից քոց. եւ ահա ծնցին ի քոց զաւակաց այլ զաւակք. զի լիցին[19] նոքա ի լուսաւորութիւն գիտութեան եւ աղբիւրք հոգեւոր իմաստութեան Հայաստան աշխարհիս:

---

[18] Համեմատէ այս տեղիքը Տեսլեան Յառաջաբանին հետ, ուր կ'ըսուի. «ձեւացս գրեց ըստ օրինակի նախնւոյն քո բարեպաշտի սրբոյն Գրիգորի» (27): Հրեշտակը կ'ակնարկէ հոն Գրիգորի Տեսիլքը, զոր աչքի առաջ ունեցած է Տեսիլքին խմբագիրը:

[19] Տպ. «ծնցի... զաւակ... զի լիցի... աղբիւր...»: Խօսքը Յուսկան որդւոց Պապի եւ Աթանագինէսի մասին է. որոնց շառաւիղէն պիտի ծնին Ներսէս: Այսպէս յոգնակի կը պահանջէ տեղիքս յետագայ պարբերութիւնը, թէեւ Ներսէսի անձին կը հայի ամբողջութիւնը. յաւելեալն ակնարկուած են նաեւ Սահակ եւ Մաշտոց:

Եւ ի Նոցանէ բղխեսցեն շնորհք պատուիրանացն Աստուծոյ եւ խաղաղութիւն բազում եւ շինութիւն եւ հաստատութիւն բազում եկեղեցեաց ի Տեառնէ Նոցա տացի, բազում յաղթութեամբ եւ մեծաւ զօրութեամբ. եւ բազում մոլ<որ>եալք դարձցին ի ճանապարհս ճշմարտութեան. որով եւ Քրիստոս բազում լեզուօք փառաւորեսցի նոքօք. որք սիւնք եկեղեցեաց լինիցին եւ մատակարարք բանին կենաց. եւ հիմունք հաւատոց, պաշտօնեայք Քրիստոսի...: Եւ բազում տունկք պտղաբերք եւ շայեկանք եւ օգտակարք ի հոգեւոր դրախտին ի նոցա մշակութեանն աջոյն անկեսցին եւ ընկալցին զօրհնութիւն յԱստուծոյ: Իսկ որք ոչն կամիցին անկել նոքօք եւ ի նոյն հոգեւոր ցօղոյն զխտութենէ ըմպել՝ խոտան դառնիցին մերկեալք յանէծս. եւ փոխան նոցա լիցի այրումն հրոյն: Բազում անգամ վասն Տեառն լինիցին նոքա ի հեռ եւ ի նախանձ [յ]անարժանացն, այլ կացցեն ի հաւատս անշարժ իբրեւ վէմ եւ յաղթեսցեն նոցա համբերութեամբ բազմաւ: — Եւ յետ նոցա թագաւորեսցէ ստութիւն յապարատան, յանձնասէր, յարծաթասէր, ի մոլախառ, յանպատապարան, յանպիտան, ի սուտակ եւ ի բանսարկու մարդկանէ. եւ ապա եթէ ոք գտցի՝ որ եւ արասցէ ունել զուխտ հաստատութեան հաւատոյ, հազիւ հազիւ: Եւ զայս ամենայն լուեալ մանուկն Յուսիկ ի հրեշտակէն՝ մխիթարութեամբ մեծաւ զոհանայ[ր]

զՏեառնէ Աստուծոյ, որ արժանի արար զնա այսպիսի յայտնութեան պատասխանւոյն»:

Ս. Յուսիկի Տեսիլքը կ'ընդգրկէ մօտաւորապէս 360—385 շրջանը, երբ Ներսէս Մեծ կ'ընտրուի Հայոց հայրապետ, եւ անոր մահուընէ վերջը կու գան անարժան աթոռակալներ:

Յուսիկան եւ Դանիէլի Տեսիլքներու հիման վրայ զարգացած է Բ. խմբագրութիւնը:

48. Ըստ Բ. խմբագրութեան կ'ենթադրէ Տեսիլը գուշակութեանց լրանալուն համար չորս ժամանակամիջոց, այս ինքն 1 + 1 + 1 + ½: Այս ժամանակամիջոցները արտայայտուած է Տեսլեան մէջ այսպէս.

Զիթենին ունի չորս ոստ, առանցմէ երեքը «միաչափք եւ հա<ւա>սարա|կա|պտուղք երեւէին եւ չորրորդն |ի նոցանէ| որպէս կիսարամին |եւ նուազապտուղ| ըստ երկայնաչափութեան երիցն |երեւէին|»: Այս երեւոյթը կը բացատրէ հրեշտակը այսպէս. «երեք ոստներեակք ամաց եւ կէս ատեներեկին համառօտեցի(ն) ի վերայ ամենայն աշխարհի մինչեւ յերեւումն պղծոյն անապատի, զոր Դանիէլ մարգարէի ասացեալ է սուրբ Հոգւոյն. եւ լինին ոստքս յայտնապէս թուով ամք ՅԾ, ըստ միազոյգ պտղոց երից ոստոցն եւ կիսոյն» (33):

Այս 350 տարիներու ծագման մասին թողլով խօսիլ յետոյ, նկատենք այժմ այն անցքերը, որոնք տեղի պիտի ունենան այս չորս ժամանակամիջոցներու մէջ: Այս մասին ու-

*նինք ուրիշ հատուած մը Տեսլեան մէջ, այն է «Մագաղաթն հատուածաձեւ», ուր գրուած են իւրաքանչիւր ժամանակամիջոցին դէպքերը, զորոնք հրեշտակը կը բացատրէ այսպէս.*

*Ա. Միջոց կամ Տասներեակ.* «Մագաղաթն հատուածաձեւ որ ցուցաւ քեզ գրեալ ի սկզբանն կարգս ինչ ոսկեղէն գրով՝ զձեռնադրութիւն արանց սրբոց եցոյց քեզ շնորհօք Հոգւոյն սրբոյ. որք ի զաւակէ երանելւոյն Գրիգորի յաջորդեսցեն արժանապէս յաթոռ քահանայապետութեան. նոքա են արք ընտիրք[20], գրեալք ոսկետեսիլ գրով ի դպրութիւն կենաց»:

*Նկատի ունի Տեսիլը.*

*Փառներսեհ*
*Շահակ եւ* 350—373.
*Ներսէս Մեծ*

*Բ. Միջոց կամ Տասներեակ.* «Եւ զի երեւեցան ի միջոյ կողմն մագաղաթին՝ հեռի յոսկեգիր կարգացն՝ կարգք ինչ խանգարեալք եւ ջնջագիրք, գիտեա՛, զի նստելոց են քահանայապետք ոմանք յաթոռ սրբոյն Գրիգորի, որք ոչ ըստ հրամանի սրբոց առաքելոցն եւ ոչ ըստ կանոնի սուրբ ժողովոյն ՅԺԸիցն լինին ձեռնադրեալք յերկնաւոր պատուի, այլ ըստ փառաց աշխարհիս ձգտին ի պատիւն յանդգնութեամբ. որք են արծաթասէրք ա-

---

[20] *Հմմտ. Յուսիկի Տեսիլքը* (§ 47):

ռաւել քան աստուածասէրք[20]: Եւ վասն զի խոտան է քահանայութիւնն եւ ոչ ըստ հաճոյից Բարձրելոյն՝ ջնջեալ են նոքա ի դպրութենէ երկնից բարութեանն...»:

*Խօսքը հետեւեալ կաթողիկոսներու մասին է, որոնք Աղբիանոսի անէն էին եւ չունէին Կեսարիոյ մետրապոլտին ձեռնադրութիւնը, ուստի եւ խափանուած էր անոնց իշխանութիւնը եպիսկոպոս ձեռնադրելու («խոտան է քահանայութիւնն». Հմմտ. Փ. Բիւզ. Ե. 29, Զ. 2—4).*

*Յուսիկ Բ.*
*Զաւէն*
*Շահակ*
*Ասպուրակէս*
373—385.

*Գ. եւ Դ. Միջոց կամ «Տասներեակ եւ կէս Տասներեկին»*: «Եւ այլ կարգն եւ միւս եւս կէս կարգին որ երեւեցաւ քեզ գրեալ սքանչելապէս ոսկի գրով ի ստորին եզեր մագաղաթին, ծանիր հաւաստեաւ, զի մերձ յերեւումն պղծոյն անապատի դարձեալ յանէն թագաւոր յազգէդ Արշակունեաց եւ նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւեղէ սրբոյն Գրիգորի: ...[21] [Եւ ի ժամանակս զոռոզացելոյ թշնամւոյն արդարութեան նստի քահանայապետ արդար ի ցեղէ Գրիգորի. եւ քահանայացեալ առաջինն՝ կատարէ զաւուրս իւր կրեալ նզովութիւնս բազումս ի սուտ ա-

[21] *Այս հատուածն ամբողջութեամբ Գ. խմբագրէն է:*

ռաքելոց իշխանին կորստեան, եւ վախճանի խաղաղական հանգստի եւ ոչ սրով: Եւ մին զաւակ նորին յաջորդեալ զաթոռ քահանայապետութեանն՝ բազում եւ ազգի ազգի համբերեալ քերանաց եւ զանից. սովոյ եւ հալածանաց եւ դառն նեղութեան՝ ժամանակս բազումս՝ յանօրէն իշխանին դահճացն՝ սրով ընկալցի զվճիռ մարտիրոսութեանն»] (35):

*Կ'ակնարկուի Գ. Սահակ 386—438:*
*[Դ. Յովսէփ 439—453]:*

*Այսպէս Տեսիլքը կ'ենթադրէր երեք ժամանակամիջոց լիաթիւ եւ միաչափ եւ կէս ժամանակամիջոցի, որոնք կը կոչուին «տասնեակ»: «Տասնեակ» այս տեղ արտայայտութեան ձեւ մըն է, որ կ'ամփոփէ իր մէջ 30 տարիներու գումարում. ըստ այսմ*

$$3 \times 30 + 15 = 105$$

*Դանիէլի մահէն (աւանդական հաշուով †348) մինչեւ 453, երբ նահատակուեցաւ Յովսէփ, ճիշդ 105 տարի կ'ընէ:*

*Տեսիլքն եւ անոր Մեկնութիւնը այս բովանդակութեամբ կը կազմէր Բ. խմբագրութեան էական ծաւալը: Կը կասկածիմ սակայն, թէ Սահակի եւ Ս. Յովսէփի մասին գուշակուած մանրամասնութիւնները հարազատ ըլլան Բ. խմբագրութեան: Ինձ կը թուի թէ այս քառակուսի փակագծի մէջ առնուած հատուածը բռնի յաւելուած մըն է Գ. խմբագրէն (տե՛ս վարը): Կը համարիմ թէ Բ.*

*խմբագրութեան մէջ այս վերջին 1½ Միջոցը կ'ամփոփէր միայն Ս. Սահակի կաթողիկոսութեան երկար՝ 63 տարիները այսպէս.*

*Ա. Միջոց՝ 25 տարի.*
*Բ. „ 25 „*
*Գ. „ 25 „*
*Դ. „ 13 „*

*Ստացուած 88 տարիները գումարելով 350 տարւոյն վրայ, որ մեր ելակէտն էր, կը հանենք 438 տարւոյն, որ Ս. Սահակի մահուան տարին է: Այս դէպքին խստիւ կապուելու չէ ճշգրիտ ժամանակագրութեան:*

Գ. խմբագրութիւն:

49. *Երրորդ խմբագիրը կը ձգտի Տեսիլքս ներկայացնել իբրեւ Մեծին Սահակի եղած յայտնութիւն: Իրեն ալ ծանօթ եղած են Յուսկան եւ Դանիէլի Տեսիլքները. անոնց յատակագծի վրայ ձեւած է իր խմբագրութիւնը: Տեսլեան Սահակի վերագրումը հարկադրած է խմբագիրը Բ. խմբագրութեան ժամանակամիջոցները 50 տարւով յառաջ մղել եւ իր կարգին մարգարէութեանց ծիրը ընդլայնել:*

*Նկատի առնելով այժմ այս՝ Յուսկան եւ Դանիէլի Տեսիլքներու վրայ զարգացած «Սահակայ» Տեսիլքը, հետեւեալ համեմատական պատկերը կը ստանանք.*

| | |
|---|---|
| ա. *Յուսիկ մտախոհ է իր զաւակներու մասին, վասն զի անոնք չունին սէր եկեղեցական կոչման:* | ա. *Սահակ մտախոհ է Գրիգորի տան յաջորդութեան մասին, վասն զի չունի ինքը արու զաւակ:* |

| | |
|---|---|
| *բ. Աստուծոյ հրեշտակը ի Տեսլեան կը քաջալերէ զՅուսիկ, ակնարկելով անոր թոռան Ներսէսի պայծառ գործերու մասին:* | *բ. Աստուծոյ հրեշտակը ի Տեսլեան կը խրախուսէ զՍահակ, յայտնելով թէ իր թոռներէն պիտի ելլեն ընտիր անձինք, որոնք պիտի փառաւորեն իրենց գործերով զԱստուած:* |
| *գ. Յուսիկ կը վախճանի:* | *գ. Շմուէլ կը վախճանի:* |
| *դ. Նախարարները զԴանիէլ կը հրաւիրեն յաթոռ:* | *դ. Նախարարները կը խնդրեն, որ Սահակ բազմի միւսանգամ հայրապետական աթոռի վրայ:* |
| *ե. Դանիէլ կը յանդիմանէ զթագաւորը:* | *ե. Սահակ կը յանդիմանէ նախարարները:* |
| *զ. Տիրապատն Հրէից կը նմանցնէ:* | *զ. Սահակ զանոնք տիրանենգ, տիրապատն եւ մատնիչ կ'անուանէ:* |
| *է. Յանձն չ'առնէր առաջարկը Դանիէլ:* | *ե. Կը հրաժարի Սահակ:* |
| *ը. Դանիէլ ըստ Տեսլեան կը գուշակէ ապագան:* | *ը. Սահակ կը պատմէ Տեսիլքը:* |
| *թ. Թագաւորը, նախարարք եւն կը լռեն. կը հիանան:* | *թ. Նախարարք կը լռեն, կը զարհուրին:* |
| *ժ. Դանիէլ կը սպանուի ի ծերութեան:* | *ժ. Սահակ կը վախճանի ի ծերութեան:* |

*Այս համեմատութիւնը կը բանայ ամէն կասկած նկատմամբ Գ. խմբագրութեան յառաջագայութեան: Այս 10 կէտերը ներկայ բնագրին հիմնական մասերն են, յատկապէս անոր կցուած Յառաջաբանին եւ Վերջաբանին:*

50. *Տեսիլքին այս կերպարանքը տալով ստացած է ժամանակամիջոցներու բաժանումը այսպիսի պատկեր մը.*

*Ա. Միջոց* 400—427 *Սահակ՝ կաթողիկոս.*
*Բ.* „ 428—438 *Հակառակաթոռ կաթողիկոսք.*
*Գ.* „ 439—453 *Յովսէփ կաթողիկոս, Վարդանեանք եւ Ղեւոնդեանք.*
*Դ.* „ 453—485 *Խոստովանողք, Վահանեանք:*

*Ա.—Գ. Միջոցք խտացած են հետեւեալ հատուածին մէջ.*

*«Եւ այլ կարգն եւ միւս եւս կէս կարգին, որ երեւեցաւ քեզ գրեալ սքանչելապէս ոսկի գրով ի սորին եղեր մագաղաթին: Ծանիր հաւաստեաւ զի մերձ յերեւումն պըղծոյն անապատի դարձեալ յանէ թագաւոր յազգէդ Արշակունեաց եւ նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւեղէ սրբոյն Գրիգորի:* Եւ վասն զի ոչ էին արհամարհեալք եւ ընկեցեալք (*Արշակունիք եւ Տունն Գրիգորի*) յերկիր ի կոխումն· այլ յայտական երեւմամբ կայր գունդն եւ ծալեալ պատուականութեամբ ցուցաւ նափորտն: Որ եւս առաւել հաստատապէս ցուցաւ քեզ եւ ծանոյց զայս վերին ազդեցութիւնն սքանչելատեսիլ ոսկէգիր կարգովն եւ կարգակիսաւն, որ ի ժամանակս զոռոզացելոյ թշնամւոյն արդարու—

բութեան նստի[22] քահանայապետ արդար, ի ցեղէ սրբոյն Գրիգորի: Եւ քահանայացեալ առաջինն կատարէ զաւուրս իւր կրեալ նեղութիւնս բազումս ի սուտ առաքելոց իշխանին կորստեան. եւ վախճանի խաղաղական հանգստիւ եւ ոչ սրով: Եւ միւս եւս զաւակ նորին յաջորդեալ զաթոռ քահանայապետութեան՝ բազում եւ ազգի ազգի համբերեալ քերանաց եւ զանից, սովոյ եւ հալածանաց եւ դառն նեղութեան ժամանակս բազումս՝ յանօրէն իշխանին դահճացն սրով ընկալցի զվճիռ մարտիրոսութեան: Այն զի ցուցաւ քեզ ի կարգին մասն մի ի գրեանցն կարմրադեղով՝ ստուգեալ հաւատարմութեամբ դաւանեաց զկատարումն մարտիրոսութեանն, որ դիպելոց է սրբոցն (34—35):

*Ամբողջ այս ընդգծուած հատուածը Գ. խմբագրէն է: Թոյլ է հոս քերականութիւնը եւ անկապ են նախադասութիւնները: Մեկնիչը նկատի ունի հոս Ս. Սահակը, Ս. Յովսէփն եւ Ղեւոնդեան քահանայք: Նա գիտէ թէ Ս. Սահակ «կրած է ճգնութիւնս բազումս ի սուտ առաքելոց իշխանին կորըստեան», այս ինքն Վռամ Թագաւորի հրամանաւ գահազուրկ եղած է եւ եկած են անոր փոխարէն «սուտ առաքեալք», այս ինքն Սուրմակ, Բրքիշոյ եւ Շահակ: Այս պարագան ցոյց կու տայ թէ խմբագիրը կամ նոյն է Ղ. Փարպեցւոյ վերագրուած Ա. Դրուագի*

[22] *Կը սպասուէր հոս «Նստցին քահանայապետք արդարք»:*

կարկառիչին հետ եւ կամ կարդացած է այս Դրուագը, ուր առաջին անգամ թխուած է Սահակայ գահապրկութեան գրոյցը։ Ինձ կը թուի թէ այս գրոյցը ծնած եւ զարգացած է Յուսկան Տեսիլքի հիման վրայ։ Յուսիկ կը տեսնէր ի մասին Ս. Ներսէսի. «Բազում անգամ վասն Տեառն լինիցին նոքա ի հեռ եւ ի նախանձ անարժանացն, այլ կացցեն ի հաւատս անշարժ իբրեւ զվէմ եւ յաղթեսցեն նոցա համբերութեամբ բազմաւ։ Եւ յետ նոցա թագաւորեսցէ ատութիւն յապարասան, յանձնասէր, յարծաթասէր... յանպիտան, ի սուտակ եւ ի բանսարկու մարդկանէ» (§ 47)։ Տեսլեան այս տեղիքը մերձեցուած է Ս. Սահակի եւ հնարուած են հակառակաթոռ կաթողիկոսներու՝ Սուրմակի, Բրքիշոյի եւ Շահակի դէմքերը։ Այս կէտին վրայ ուրիշ տեղ խօսելու առիթը պիտի ունենամ։

Ամբողջ հատուածին բռնի յաւելուած ըլլալը կը տեսնուի նաեւ յաջորդ պարբերութենէն։ Կ'ըսուի թէ «նստի քահանայապետ արդար ի ցեղէն սրբոյն Գրիգորի. եւ քահանայացեալ առաջինն... եւ միւս եւս զաւակ նորին յաջորդեալ զաթոռ քահանայապետութեանն»։ Ի՞նչ աղերսով են հոս «առաջինն» եւ «միւս եւս զաւակ»։ Եթէ «նստի քահանայապետ արդար ի ցեղէն Ս. Գրիգորի», այդ քահանայապետը չէր կրնար յանկարծ երկու դէմք զգենուլ՝ ըլլալու համար «առաջին... եւ միւս եւս զաւակ»։ Ս. Յովսէփ «ի ցեղէն Ս. Գրիգորի» չէր եւ ոչ ալ «միւս եւս զաւակ»

*Սահակայ*[23]*: Թերեւս հոս «զաւակ» աշակերտ իմաստով առնուած է. այս դէպքին պիտի սպասուէր, որ յիշուէին նաեւ Գիւտ եւ Յովհաննէս Մանդակունի: Ի՞նչ նպատակ ունէր Յովսէփի առընթեր՝ Ղեւոնդեանց քահանայից նահատակութեան յիշատակութիւնը:*

*Տեսիլքի բնագիրը, ըստ խորագրին, գրուած էր կարմրադեղով իբրեւ «բան Հօր», եւ Մեկնութիւնը սեւադեղով իբրեւ «բան Հրեշտակին»: Այս զանազանութիւնը գոյներու եթէ հնագոյն օրինակին, ենթադրենք Բ. խմբագրութեան, կը պատկանէր, ընթերցողին թիւրիմացութիւն պիտի պատճառէր թէ Տեսիլքին եւ թէ Մեկնութեան մէջ տողերս. «Այն զի ցուցաւ քեզ ի կարգին մասն մի ի գրելոցն* կարմրադեղով*... զաւանեաց զկատարումն մարտիրոսութեանն»: Նաեւ հոս Գ. խմբագրին ձեռքը կը նշմարուի:*

*Ինչպէս առ հասարակ մեկնութիւնս բանագրօսիկ է, նոյնպէս թոյլ է նախադասութիւնը, թէ հոս, թէ վերագոյն եւ թէ քիչ յետոյ:*

51. *Մեկնիչը կը գուշակէր թէ «մերձ յերեւումն պղծոյն անապատի դարձեալ յառնէ թագաւոր յազգէդ Արշակունեաց եւ նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւեղէ Ս. Գրիգորի»: Հայրապետը Ս. Սահակ է, որ* 386*ին բարձրացաւ հայրապետական աթոռի վրայ*

---

[23] *Անդրադարձութի՞ւն մը Յուսիկի Տեսիլքին «եւ ոհա ծնցի ի քոց զաւակացդ այլ զաւակ» պարբերութեան:*

ըստ ուղիղ ժամանակագրութեան: Այս միջոցին բաժնուած էր Հայաստան. Արշակունի տունը յանձինս Արշակ–Վաղարշակի դադրած. իսկ Խոսրովի իշխանութիւնը չեզոքացուած, ճշդագոյնս անոր սակաւամեայ գահակալութենէն ետքը գահը թափուր մնացած: Ուստի հոս «պիղծն Անապատի» Շապուհ Գ. կամ Յազկերտ Ա. է: Իրօք ալ Յազկերտի թագաւորութեան առաջին տարիներուն, երբ 401ին բարձրացաւ արշակունի գահին վրայ Վռամշապուհ, երբ 10ամեայ թափուրութենէ ետքը: Տեսիլքը չի գիտեր Վռամշապուհի մահուան յաջորդած 10ամեայ դատարկութիւնն գահին եւ Արտաշէսի գահակալութիւնն եւ անոր մահէն ետքը արշակունի հարստութեան ի սպառ բարձումը. Թէպէտ ծանօթ են անոր Սահակի մահը, Յովսէփ կաթողիկոսի նահատակութիւնը, նաեւ Վարդանեանց եւ Վահանեանց նահատակներն եւ խոստովանողները: Այստեղ կը տեսնենք նոր չօշափելի կէտ մ՚ալ, Բ. եւ Գ. խմբագիրներու հետքերը զանազանելու համար: Բ. խմբագիրը իրեն սահման ընտրած էր մինչեւ Ս. Սահակի աթոռակալութիւնը եւ Վռամշապուհի գահակալութիւնը: Անիկա ոչ Սահակի մահն եւ ոչ ալ Արշակունի տան կործանումը չօշափած է:

52. Հրեշտակը, որ կը մեկնէր Տեսիլը, մինչեւ այժմ Տեսլեան խօսքերը չէր մերձեցուցած Սահակի անձին: Շարունակութեան մէջ, ուր Սահակի թոռներն նկատի կ՚առնուին, աւելի բացայայտ են իր խօսքերը, զո-

*րանք Սահակ բառ առ բառ յանձնած է մագաղաթի·*

«Եւ որ երեւեցան քեզ բազմութիւնք տղայոց շուրջ կալով ի վերայ արծաթի սկտեղն, զուարթացիր ցնծալից ուրախութեամբ· զի ահա յարգանդէ *գաւակիդ*, որ տուաւ քեզ յԱրարչէն, ելցեն *բազում շառաւիղք*, արք ընտիրք զօրութեամբ· *ընդ որս միաբանեալ եւ այլ բազմութիւնք լաւ արանց՝ յազգէ նախարարացդ Հայոց*· որք զօրացեալք սուրբ բանիւն Աստուծոյ եւ զյարուցմունս թագաւորաց եւ զսպառնալիս իշխանաց առ ոչինչ համարեսցին՝ միացուցանեն զանձինս ընդ յոյսն բաղձալի երկնաւոր կոչմանն՝ չհայելով ի մեծութիւնս սնոտիս եւ ոչ ի փառս առժամայնս· ընդ որոյ վաճառեալ ոմանց զփառս անեղծին Աստուծոյ, ընդ սնոտի եւ ապականացու կենաց աշխարհիս՝ ուրացողք լինին· վասն զի մօտ է առ դուրս վաճառ՝ թուլացելոցն ի կորուստ· եւ հասեալ կայ հուպ օգնութիւն՝ զօրացելոցն ի փրկութիւն: Յորս եւ դու հայեցեալ տեսեր շուրջ զաստուածային սեղանովն պարելով զտղայսն, չհայելով բնաւ ի սայթաքմունս սնոտի հեթանոսական պաշտամանն· յորոց ոմանք կատարելութեան հասեալք՝ մարտիրոսական պսակին լինին արժանիք· եւ այլք՝ յարանց բազմաց, եւ ոչ միայն յարանց, այլ եւ ի կանանց, որք թէպէտ եւ ոչ սրով, այլ ի շնորհաց սուրբ Հոգւոյն զօրացեալք՝ բազում բարեգործութեամբք կատարին: Որպէս երեւէին քեզ լու-

սափայլ նշոյլք արձակեալք ի մանկտւոյն· յորոց ոմանց կարմրագոյն փայլմամբ երփն երփն էր գոյնն՝ զկատարելոցն արեամբ զուշակէ զնահատակութիւն· եւ զայլոցն պէսպէս ճառագայթիւք ցուցանէր զշողումն՝ որպէս զբազմափայլ գոյնս լուսաւորութեան առաքինի մարդոց· վասն զի բազում եւ անթիւ են ճգնութիւնք եւ վաստակք արանց արդարոց:

Եւ վասն զի շարժեցաւ սաստիկ դղորդմամբ աթոռն զոր տեսեր· եւ որ երբեմն տղայք քեզ երեւէին, յաճումն կատարելութեան բովանդակեալք՝ յերկրէ յերկինս թռուցեալ համբարձան՝ բովանդակապէս զերկրիս կենցաղս արդարոցն եւ ի յերկինս զլինելոց նոցա զհրեշտականման փոխումն եցոյց քեզ պարգեւատուն բարեաց: Քանզի իբրեւ զտղայս կացին յաշխարհիս արդարքն անմեղութեամբ, չդարձուցանելով ուրեք զհայեցուածս մտաց իւրեանց ի զբաղմունս նանրութեան, այլ ուշադրեալք ի հրաւիրումն երկնաւոր կոչմանն ուրախութեան հասին:

Քանզի բազում եւ խիստ դղորդմունք յայսմհետէ լինելոց են յաշխարհիս, յարուցմունք թագաւորաց ի վերայ միմեանց, սովք եւ սասանութիւնք[24] եւ բազում նեղութիւնք, որք *զգալուստ որդւոյն կորստեան* նշանակեն·

---

24 *Հմմտ. Մատթ., ԻԴ., 7· «Լսելոց էք պատերազմունս... յարիցէ ազգ յազգի վերայ եւ թագաւորութիւն ի թագաւորութեան. եւ եղիցին սովք եւ սրածութիւնք եւ սասանութիւնք ի տեղիս տեղիս»:*

որ եկեալ նստիցի՝ ըստ գրեցելումն՝ ի տեղւոջն սրբութեան, ցուցանելով զինքն աստուած. որ հաշի եւ մաշի ի վերին զօրութենէն. զոր տէր Յիսուս սատակեսցէ հոգւով բերանոյ իւրոյ[25]» (35—36):

53. Այս գուշակութիւնները կը հային առանց տարակուսի 451—485 տարիներուն, այն է Կարմիր Վարդանի եւ Վահան Մամիկոնեանի մղած կռիւներուն եւ այս առթիւ նահատակուածներու եւ խոստովանողներու: Հրեշտակը կարդացած էր Ղ. Փարպեցւոյ Բ. եւ Գ. դրուագները:

Ինձ կը թուի թէ Հրեշտակը նկատի ունէր նաեւ Եղիշէի Հայոց պատերազմի պատմութիւնը, հաւանօրէն իր Սկզբնագրին մէջ, ուստի եւ գուշակութիւնները մերձեցուած են նաեւ 572—590 տարիներու դէպքերուն: Կան հոս Եղիշէէն փոխ առնուած մտքեր եւ բաներ: Այս տեսակէտէ ուշագրաւ են հետեւեալ տեղիքները. կ'ըսուի. «ահա յարդանդէ գաւակիդ... ելցեն բազում շառաւեղք, արք ընտիրք զօրութեամբ — ընդ որս միաբանեալ եւ այլ բազմութիւնք լաւ արանց յազգէ նախարարացդ Հայոց[26] — որք... դյարուց-

[25] Հմմտ. Բ. Թեսաղ., Բ., 3—8. «Եկեսցէ ապստամբութիւնն եւ յայտնեսցի մարդն անօրէնութեան՝ որդին կորստեան, հակառակորդն հպարտացեալ ի վերայ ամենայնի... մինչեւ նստել նմա ի տաճարին Աստուծոյ եւ ցուցանել զանձն թէ աստուած իցէ... զոր տէր Յիսուս սատակեսցէ հոգւով բերանոյ իւրոյ»:

[26] Հմմտ. Եղիշէ. «Ի սմին հաւանութեան ամենայն բազմութիւնն միաբանեալ» (32). «որք են յազգէն նախարարացն Հայոց» (15):

մունս թագաւորաց եւ գաղտնայիս իշխանաց առ ոչինչ համարեալ՝ միացուցանեն զանձինս ընդ լոյսն բաղձալի երկնաւոր կոչմանն...: Վասն զի մօտ է առ դուրս վաճառ՝ թուլացելոցն ի կորուստ եւ հասեալ կայ հուպ օգնութիւն՝ զօրացելոցն ի փրկութիւն»:

Սահակի դասեր արգանդէն պիտի ելլեն «բազում չարաւեզք», այն է Մամիկոնեան անէն: Այս «բազում չարաւեզք» Սահակայ թոռունք չեն միայն, այլ եւ թոռունք թոռանց. անոնք «զյարուցմունս թագաւորաց եւ գաղտանայիս իշխանաց» առ ոչինչ պիտի համարին: Այս թագաւորներէն մին է «որդին կորստեան», որ պիտի ցուցնէ ինքզինքը «աստուած»: Եւ սակայն պիտի «հաչի եւ մաչի ի վերին զօրութենէն»: Այս կորստեան որդին, ըստ Եղիշէի, Խոսրով Ա. Անուշրուանն է, որ ինքզինքը անմահ կը ներկայացնէր եւ «աստուած» կ'անուանէր: Ինքն է Արեւելից իշխանը, որուն ապառնալիքները եւ «յարձակումները» արհամարհեցին Վարդան Քաջ եւ իւրայինք: «Յարուցմունք թագաւորաց ի վերայ միմեանց» կը յիշեցնեն 572—590 տարիներու յոյն-պարսկական 20ամեայ պատերազմները եւ 590ի Խոսրով Բ.ի եւ Վահրամ Միհրեւանդակի ճակատամարտները:

572ի Հայոց ապստամբութենէն ետքն էր, որ Հայ նախարարներն եւ ալկնայք փախան Կ.Պոլիս եւ հոն մնացին աւելի քան 20 տարի: Այս պատերազմներու ընթացքին էր, որ «ոմանք... մարտիրոսական պսակին լինին

արժանիք. եւ այլք յարանց բազմաց... եւ ի կանանց բազում բարեգործութեամբք կատարին»:

Այս ըմբռնմամբ երեք եւ կէս ժամանակամիջոցները կրնանք ընդլայնելով հաշուել Դանիէլի «երեքեւթներրորդ եւ կէս մի եւթներորդի» թուերով այսպէս. 70 × 3 + 35 = 245 եւ ելակէտ առնելով 348 կը ստանանք 593, երբ Պարսից եւ Յունաց մէջ խաղաղութիւն կնքուեցաւ եւ Խոսրով Բ. թողութեան հրովարտակ տուաւ:

54. Այս հատուածի հետ սերտիւ կապուած է հետեւեալ տեղիքը, որ ըստ իմաստին համազօր է «այլ կարգն եւ միւս եւս կէս կարգին» երեւութին հետ, ուր գուշակութեանց ժամանակը կ՚ակնարկուի.

Զիթենին բարձր ունէր 4 ոստեր, որոնք ի խոնարհ կողմն երկրի ձգուէին, անոնցմէ երեքը միաչափ էին եւ չորրորդը «կիսաչափ ըստ հասարակութեան երիցն»: Առ այս երեւոյթ հետեւեալ մեկնութիւնը կը տրուի. «Լուր եւ ասացից քեզ, զոր ինչ սահմանեաց Բարձրեալն. յայսմհետէ մինչեւ ի վախճան աշխարհիս՝ երեք տասներեակք ամաց եւ կէս տասներեկի համառօտեսցի ի վերայ ամենայն աշխարհի, մինչեւ յերեւումն պղծոյն անապատի, զոր Դանիէլ մարգարէի ասացեալ է սուրբ Հոգւոյն. եւ լինին սոքա յայտնապէս թուով ամք երեք հարիւր յիսուն՝ ըստ միագրոյ պտղոյ երից ոստոցն եւ կիսոյն» (33):

Դանիէլի Տեսլեան խօսքերը, որ հոս ի

վկայութիւն կը կոչուին, են. «Եւ ահա այրն Գաբրիէլ... մերձեցաւ առ իս իբրեւ ի ժամ երեկորին պատարագին եւ խելամուտ արար զիս եւ խօսեցաւ ընդ իս եւ ասէ. Դանիէլ... ած զմտաւ զբանդ եւ ի միտ առ զտեսիլդ. Եւթանասուն եւթներորդք համառօտեցան ի վերայ ժողովրդեան քոյ. եւ ի վերայ քաղաքին սրբոյ... Եւթներորդ մի եւ կէս եւթներորդի բարձցին զոհք եւ նուէրք. եւ ի վերայ տաճարին պղծութիւն աւերածոյն կացցէ. եւ մինչեւ ի վախճան ժամանակի կատարած տացի ի վերայ աւերածին» (Դան. Թ. 21—27):

«Եւթներորդ մի եւ կէս եւթներորդի», հաս «երեք տասներեակք ամաց եւ կէս տասներեկի» վերածուած է: Իւրաքանչիւր տասներեակ կը բովանդակէ 100ամեայ շրջան կամ դար մը, բառ այամ $3 \times 100 + 50 = 350$: Այս 350 տարիները թէ ո՞ր կէտէն կը սկսին, յայտնի չէ, բայց կը հասնին «մինչեւ յերեւումն պղծոյն անապատի»: Դանիէլ «զՊիղծն Անապատի» չէ անուանած երբեք:

Մեկնիչը «մինչեւ յերեւումն պղծոյն անապատի» բառ առ բառ կրկնած է նաեւ յետոյ. «զի մերձ յերեւումն պղծոյն անապատի». այլուր այդ «պիղծն անապատի» անուանուած է «զոռոզացեալ Թշնամի», նաեւ «անօրէն իշխան»: Յետոյ քով «պիղծ անապատի» յորջորջմամբ իմացուած է Մահմետ: Դանիէլի յիշեալ տեղիքը Սեբէոս մերձեցուցած է Արաբացւոց երեւման: Ինչպէս վերագոյն տեսանք

Բ. Մեկնիչի համաձայն «պիղծն անապատի» Շապուհ Գ. (383—388) է, որ հայ ժամանակագիրներէն նոյնացուած է Շապուհ Բ.ի Երկայնակեացի հետ: Գ. Մեկնիչը «անօրէն իշխանով» կ'իմանայ Վռամ Ե. Գոռ (420—438), որուն օրով տեղի ունեցաւ Սահակի գահազրկութիւնը:

Նկատմամբ 3½ի, որ երկիցս երեւան կու գայ, այսպիսի թուաբանական լուծում կը տրուի. «երեք տասներեակք ամաց եւ կէս տասներեկի համառօտեցի... մինչեւ յերեւումն պղծոյն անապատի... եւ լինին սոքա յայտնապէս թուով ամք ՅԾ»: Ուստի իւրաքանչիւր տասներեակ հաշուած է 100, եւ մեկնուած ընդհանուր գումարը 100 × 3 + 50 = 350. մինչ ըստ սովորական իմաստին պիտի ստանայինք 10 × 3 + 5 = 35: Այս 35ը կամ 350 կը լեցնէ «յայտնեալ մինչեւ ի վախճան աշխարհիս» ժամանակամիջոցը: Դժբախտաբար չէ ըսուած թէ որն է «յայտնեալ»ի սկզբնաւորութիւնը կամ եզակէտը, որպէս զի գտնէինք աշխարհի վախճանին ուղիղ թուականը, երբ պիտի երեւայ Պիղծն Անապատի:

Ընդունելով Պիղծն Անապատի Շապուհ Գ. եւ վախճան աշխարհիս 385/86 տարին, երբ կ'իյնայ Հայաստանի բաժանումը, եւ հանելով այս տարիէն 35ը, կը ստանանք 350, երբ տեղի կ'ունենայ Դանիէլի մահը (ըստ ընկալեալ ժամանակագրութեան): Այս ժամանակամիջոցը հետաքրքրական է նաեւ անով, որ ճշդիւ 386ին, «մերձ յերեւումն Պղծոյն Անա-

պատի» կ՚ընտրուի Գրիգորի Տնէն Ս. Ներսիսի որդին Ս. Սահակ, որ Տեսիլքին գլխաւոր նպատակակէտն է: Այս մեկնութիւնը ամենայն ճշդութեամբ կը պատշաճի Բ. խմբագրութեան. որ Սահակի ընտրութիւնը գուշակել կը գիտէր:

Բայց կարելի է «երեք տասներեակք ամաց եւ կէս տասներեկի» առնել իբր գուշակական անորոշ միութիւն մը, զոր օրինակ 30 × 3 + 15, որով կը ստանանք 105: Ընդունելով 350ը ելակէտ կը հասնինք 455ի, որ թուականն է Ս. Յովսէփի եւ Ղեւոնդեանց քահանայից, նաեւ յընդհանուրն Վարդանանց պատերազմի: Կրկին մեկնութեամբ ալ Մեկնիչին տուած 350 թիւը կ՚ընծայէ զարմանալի զուգադիպութեամբ մեր ընտրած ելակէտը, փրկչական թուականի 350 տարին:

Եթէ ուզենք մ՚ալ 350 տարիներու վրայ անխախտ, ելակէտ առնելով դարձեալ 350 տարին, կը ստանանք ճշդիւ 700 թուականը: Հետաքրքրական է այս թուականն ալ: Ինչպէս վերագոյն նկատեցինք, Սահակի Տեսիլքը առաջին անգամ այս թուականէն ետքը երեւան կ՚ելլէ: Մօտաւորապէս ա՛յս տարւոյն գրուած է Diegesis գրուածքը: Ըստ այսմ Տեսիլքի Գ. Մեկնիչը ուզած է այս թուականով մատնանշել մեզի Սահակ Գ. կաթողիկոսի (677—703) գահակալութիւնն կամ մահը, եւ աւելի ճիշդ Մեկնութիւնս խմբագրելու տարին: Այս դարուս «պիղծն անապատի» Մահմէտն էր, ընդհանուր ըմբռնմամբ. իսկ մասնական

*առմամբ Մահմէտ զօրավարն էր, որ կու գար «Անապատէն», Արաբիայէն, վախճան տալու Հայաստանի, քանդել կործանելու, որուն ընդառաջ կը դիմէր Սահակ Զօրափորեցի եւ կը վախճանէր, ըստ աւանդութեան, ի Խա-րան, աղերսագիրը ձեռքին:*

55. *Գ. խմբագիրը իր Մեկնութիւնը գրած ժամանակ աչքի առաջ ունեցած է Ղ. Փարպեցւոյ Բ. եւ Գ. Դրուագները, այժմեան ձեւին մէջ: Կը դնեմ համեմատութեան հետեւեալ տեղիքները.*

| Տեսիլք. | Ղ. Փարպ. |
| --- | --- |
| 1. *Որ երբեմն տղայք քեզ երեւէին՝ յաճումն կատարելութեան բովանդակեալք յերկրէ յերկինս թռուցեալ համբարձան. բովանդակապէս զերկրիս կենցաղս արդարոցն եւ ի յերկինս զլինելոց նոցա զհրեշտականման փոփոխումն եցոյց քեզ...* (36, 6—8): | *Իսկ զմնացեալ դեռ եւս ի տղայութեան հասակի զորդիս նահատակացն ընդ որոյն Վարդանայ... կանայք... զօգտաբեր չքեղաբար հրահանգս մանկանցն հոգացեալ լնուին* (110, 34—35. *համմտ. եւ* 111, 4—5, 112, 23—39): |
| 2. *Իբրեւ զտղայս կացին յաշխարհիս արդարքն անմեղութեամբ չդարձուցանելով ուրեք զհայեցուածս մտաց իւրեանց՝ ի զբաղմունս նանրութեան, այլ ուշադրեալք ի հրաւիրումն երկնաւոր կոչմանն ուրախութեան հայէին* (36, 9—12): | *Որում անհնարին էր յաղթել կանանց՝ չատխօսութեան եւ ստէպ ստէպ ընդ քօղով այսր անդր հայեցողութեան, զաչս յածելոյ ի ստէպ. եւ ցածուցին զլեզուս իւրեանց յաւելորդ խօսից* (110, 5—7): |

Հետաքրքրական է մանաւանդ հետեւեալ համեմատութիւնը, ուր կը թուի ինծ, թէ երկու եղբներն ալ մէկ ձեռքէ են, եւ այն ա՛յն խմբագրէն, որ կցկցողն է Ղ. Փարպեցւոյ Ա. Դրուագին, Տեսիլքին (Գ. խմբագրութեամբ) եւ յանուն Յովհ. Մանդակունւոյ Հրապարակախօսութեան:

Տեսիլք·

«Եւ յայնժամ կատարեալ վարուք առաքինութեամբ թուիցեն արդարքն ի յաւիտենից յարկսն եւ այնպէս յամենայն ժամ ընդ Տեառն լինիցին: Եւ ապա յայտնապէս կատարի առ նոսա բանն Տեառն, որ ասէ, թէ Ուր եսն եմ անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի: Եւ դու կնքեա զտեսիլդ, որ ցուցաւ քեզ յայտնութիւն ի բարձանց· քանզի ոչ վրիպեսցի այտի բան մի՝ մինչեւ կատարեսցի ամենայն» (էջ 36):

Ղ. Փարպեցի·

«Արդ եղիցի ձեզ ընդ այդպիսի զարդու եւ զերկնից փափագելի զգենուլ զզարդն, եւ ընդ այսպիսի ուրախարար պսակի, որ թուով աւուրս պայծառացուցանէ զառացողս իւր՝ զլուսատեսիկ եւ զերկնաւոր պսակն, զանապականն եւ զմշտնջենաւոր ընդունել յաջոյ փրկչին մերոյ եւ Տեառն Յիսուսի Քրիստոսի, լսել զփառաւորեալ եւ զերանելի բարբառն, թէ Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւնն ի սկզբանէ աշխարհի» (էջ 182):

Տեսիլքը կը մեկնէ Հրեշտակը. եւ բառ առ բառ կը կատարուի «առանց բան մը վրիպելու»: Երկու հատուածներու մէկ ձեռքէ բղխած ըլլալը տարակուսի տակ չ՚իյնար:

56. Բաց ի Ղ. Փարպեցիէ, խմբագիրը կարդացած է նաեւ Եղիշէի Պատմութիւնը

*Հայոց պատերազմին: Համեմատութեան եզրներն են.*

| Տեսիլ (Ղ. Փարպ. 35). | Եղիշէ, 76: |
| --- | --- |
| *Ելցեն... որք ընտիրք զօրութեամբ. ընդ որս միաբանեալ եւ այլ բազմութիւնք լաւ արանց յազգէ նախարարացն Հայոց. որք զօրացեալք սուրբ բանիւն Աստուծոյ եւ զյարուցմունս Թագաւորաց եւ զսպառնալիս իշխանաց* արհամարհեալ՝ միացուցանեն *զանձինս ընդ յոյսն բաղձալի երկնաւոր կոչմանն, չհայելով ի* մեծութիւնս սնոտիս *եւ ոչ ի փառս առժամայնս.* | *Մեծ է սէրն Աստուծոյ քան* զամենայն մեծութիւն երկրաւոր... *Մարդիկ, որ սիրովն Աստուծոյ իբրեւ գինով վառեալք էին, ոչինչ խնայեցին... ի մահ անձանց կամ յափշտակութիւն ընչից...* առ ոչինչ համարեցան *զայս ամենայն անցս չարչարանացն, այլ միայն* միաբան կալ *ընդ Աստուծոյ... եւ <քան>* զ*ամենայն երեւելի* մեծութիւնս *(այլ. -թեանս) զնա բաւական* համարեցան՝ *ընտրեալ ի միտս իւրեանց:* |
| *Նշոյլք արձակեալք ի մանկուոյն:* | *...Յորս ամենեւին չծագէ նշոյլք սուրբ լուսոյն Քրիստոսի* (8): *Իբրեւ նշոյլք ճառագայթից արեգական հասանէին* (91): |
| *Թուլացելոյն ի կորուստ:* | *Որոց ոգիքն թուլացեալ են յերկնաւոր առաքինութենէն* (13). *ոչինչ կասեալ թուլացան յերկնաւոր առաքինութենէն* (158): |
| *Մարտիրոսական պսակին լինել արժանիք. հասեալ կայ հուպ օգնութիւն* | *ընդ նոսին նոցունց պսակացն արժանի լինիջիք* (122): *յոր հուպն չհրամայեաց երթալ* (28): *Ամենեւին* |

| | |
|---|---|
| | *հում ոչ ոք իշխէ երթալ առ նոսա* (143)։ |
| *ի հրաւիրումն երկնաւոր կոչմանն ուրախութեանն հայէին.* | *արժանի արարեր զմեզ կոչմանդ երկնաւորի* (96)։ |
| *Որ հաշի եւ մաշի ի վերին զօրութենէն.* | *սկսաւ հաշել եւ մաշել եւ հատաշելով յօդուց հանել (Խոսրով=Յազկերտ)* (15)։ |

*Եղիշէի Պատմութիւնը գրուած է Զ. դարու վերջին քառորդին. ուստի Տեսիլքիս խմբագիրը օգտուած է անկէ առ կանուխ Է. դարու մէջ։*

57. *Գ. խմբագրութեան ժամանակը որոշելու համար կը թուի ինձ թէ կռուան կ՚ընձեռէ մեզի Տեսիլքի Յառաջաբանին հետեւեալ տեղիքը.*

«Էի ես ի մեծի հինգշաբաթուջն ի զատկի աղուհացիցն ի հսկման, հաղորդեալ ի ժամ երեկոյին պաշտաման՝ սրբոյ եւ մեղսաքաւիչ խորհրդոյ Կենարարին, ճաշակեալ այլ ընաւ աւելի ինչ ոչ՝ բայց հաց եւ ջուր եւ աղ, ըստ կանոնին մեծի եւ սուրբ ժողովոյն երեքհարիւր ութ եւ տասանցն, որք ի Նիկիացւոց քաղաքին այսպէս կանոնագրեալ հաստատեցին, զորոց կանոնադրութիւն կնքեալ սուրբ Հոգին սահմանեաց» (28)։

*Նիկիոյ ժողովը այսպիսի կանոն չէ սահմանած։ Յառաջաբանիս հեղինակը աչքի առաջ ունեցած է Գանգրայի ժողովոյն կանոնաց ԻԱ., որ կը հրամայէ. «Եթէ ոք զՔառասներորդն պահեսցէ սուրբ եւ զատկի*

<հինգ> շաբաթի օրն քան զհաղորդել օրի-նացն եւ բաժակին սրբելոյ, եթէ այլ ինչ աւելի համարձակիցի ուտել, զպահսն զոր պահեաց՝ ընդունայն. եւ ի մեծ ժողովոյն Նոյո-վեայ» (Ձեռ. Վիեննայի, Թ. 810, 50ա)։ Եւ Լաւոդիկիայի ժողովոյն Կանոնաց ԽԷ. որ կը սահմանէ. «Չէ արժան ի Քառասներորդին յաւագ շաբաթուն հինգշաբթի օր բերան լուծանել, զի մի ամենայն պահք Քառասներորդացն անարգեսցին, այլ արժան է զամենայն քառասներորդան պահել եւ լոկ հաչառք հացիւ մխիթարել զանձինս» (Թ. 810, 59բ)։

Գանգրայի եւ Լաւոդիկիայի Կանոններու վերագրումը Նիկիոյ ժողովոյն արդիւնքն է հաւանօրէն այն հանգամանքին, որ հին Կանոնագրոց սկիզբը զետեղուած եղած է Նիկիոյ ժողովոյն կանոնները, որմէ առեալ յաջորդ ժողովներու կանոններն ալ Նիկիականք կոչուած են. այսպէս ունինք «Բ. Նիկիականք» կոչուած կանոնախումբը, ուր համառօտուած խմբագրութեամբ համագրուած են բոլոր ժողովներու կանոնները։ Այս տեղ Լաւոդիկիայի ԽԷ. Կանոնը ներկայացուած է այսպէս. «Ոչ է պարտ զքառասնորդս մեծի հինգշաբաթին լուծանել, այլ չորակեր լինել» (Կան. ՃԵ., Թ. 810, Թղ. 141բ)։

Ասկէ կրնանք հետեւցնել, թէ Յառաջաբանին հեղինակը ձեռքի տակ ունեցած է հին կանոնագիրքը, որ կար հրապարակի վրայ Յովհ. Օձնեցւոյ հաւաքածոյէն յառաջ։ Վերջինս Հաւաքածոյին մէջ շատ Կանոններ

կրած են փոփոխութիւն, ի թիւս որոնց նաեւ յիշեալ կրկին կանոնները. բարեբախտաբար ունինք զանոնք հին հեղինակներու քով, աւելի անաղարտ ձեւի մէջ:

Վրթանէս Քերթող իր Պատճառք չորից ժողովոց գրուածքին մէջ (Գիրք Թղթոց, էջ 124—125) այսպէս կը գրէ. «Ահիւ եւ արթմութեամբ եւ սրբութեամբ տանել ի գլուխ զսուրբ քառասներորդացն պահս. եւ ոչ վայրապար յաւուրս պահոցն քարոզել աւետարան եւ մատուցանել պատարագ հրամայեցին, թէեւ յիշատակ սրբոց դիպեսցի, բայց ի շաբաթու եւ ի կիւրակէի: Եւ սահմանեցին այսպէս. Եթէ ոք կատարեալ հասակաւ, առողջ մարմնով քրիստոնեայ անուն ի վերայ եւ զքառասնաւրեայ պահսն ի գլուխ ոչ տանիցի, նզովեալ լիցի: Եւ եթէ յաւագ շաբաթուն ի հինգշաբաթին այր <յառաջ> քան զհաղորդել սուրբ խորհրդեան՝ բերան ոք լուծցէ, նզովեալ լիցի եւ ամենայն պահք քառասնորդացն ընդունայն լիցին»:

58. Կարեւոր է մեզի համար Գանգրայի ԻԱ. կանոնը, որուն յառաջ «քան զհաղորդել սուրբ խորհրդեան» (կամ «օրինացն եւ բաժակին») պարբերութեան մէջը չարափոխուած է Յառաջաբանին հեղինակէն «հաղորդել ի ժամ երեկոյին պաշտաման սրբոց եւ մեղաքաւիչ խորհրդոյ Կենարարին», այս ինքն երեկոյեան հսկման պաշտաման եւ ոչ առաւօտեան պատարագին: Այս տեղ կ'երե-

*ւոյ թէ հեղինակը կը հետեւի տեսութեան մը, որ պաշտպանուած է Ը. դարու սկիզբը:*

*Խոսրով վարդապետ, Ը. դարու առաջին քառորդին, այսպէս կը գրէ այս խնդրոյն շուրջը*[27]*. «Երանելի առաքեալքն իբրեւ գինքեանս համարէին զօրս զկնի իւրեանց. չկասկածէին թէ այնչափ խնդիր եւ հակառակութիւն լինի քրիստոնէից վասն պահոց լուծման եւ մանաւանդ վասն մեծի շաբաթուն, որոյ աւուրքն խորհրդական իւրաքանչիւր զատիկ առանց զենման, զի «Զատիկ մեր զենաւ Քրիստոս» (Ա. Կոր. Ե. 7): Իսկ յորմէ փոքր ինչ կասկածէին վասն հին զատկին եւ նորոյ ուխտին՝* զհինգշաբաթին աւր արգելին զժողովրդականսն ի հաղորդելոյ, *զի մի ի պատճառս հաղորդութեան եւ զատկին անուան ի լուծումն մարթերիցին պահոցն. յաղագս այսր պատճառի ի մեծի ուրբաթուն յորում պատարագեցաւ գառնն Աստուծոյ, «որ եբարձ զմեղս աշխարհի» (Յովհ. Ա. 29), ոչ մատուցանի պատարագ մինչեւ ցկիւրակէին գիշեր. զի թէ վասն շաբաթու եւ կիւրակէի այնչափ վիճաբանեն, եւ վասն զալստեանն յԵրուսաղէմ, ո՛րչափ առաւել հակառակէին վասն մեծի աւուր չարչարանաց փրկչին, զի զմեղ ոչ իշով այլ խաչիւն փրկեաց: Այլ վասն պահոցն ոչ մատչի պատարագ մինչեւ ի յարութիւնն, յորում լու-*

---

[27] *Բան վարդապետութեան յաղագս Քառասնորդացն, ասացեալ տեառն Խոսրովայ. Հանդ. Ամս.,* 1904, *էջ* 315:

ծանր մեղք եւ անէծք եւ մահ, եւ հաղոր-
դին համարէն հաւատացեալք կենդանարար
եւ մեղսաքաւիչ խորհրդոյն, որք արժանա-
ւորք գտանին, եւ ապա ճաշակեն ի լուծա-
կան կերակուրն»:

Յառաջաբանին եւ Խոսրովի տողերուն ներքին աղերսը աչքի կը զարնէ. Յառաջաբ. ակնարկելով Նիկիոյ ժողովոյն հայրերը կը գրէ. «Զորոց կանոնադրութիւն կնքեալ սուրբ Հոգին սահմանեաց»: Խոսրով յառաջ բերելով Գանգրայի ժողովին Ի. կանոնը կը գրէ. «զոր Հոգին սուրբ սահմանեաց զսա»: Յառաջաբ. կ'ըսէ. «ճաշակեալ այլ ինչ ուտելի ինչ ոչ բայց հաց եւ ջուր եւ աղ» = Խոսր. «Քառասուն աւուրց անընդհատ պահք, որպէս կայ ի կանոնս նոցա, անլուծանելի եւ անմերձ յամենայն կերակուրս՝ բաց յաղ եւ ի հաց» (313): Խոսրով աչքի առաջ ունի հոս Սոկրատի Եկեղ. Պատմութիւնը. «Թէոդոս զպահս քարոզեալս յեկեղեցւոյ պնդութեամբ յարդարէր. մանաւանդ զքառասներորդս սր-բոյ զատկին եւ զուրբաթ եւ զչորեքշաբաթ անլուծանելի, զոր հացիւ եւ աղիւ եւ ջրով ընդ երեկոյս զգէսս վճարէր» (էջ 619): Յառաջաբ. «հաղորդեալ... սրբոյ եւ մեղսաքաւիչ խորհրդոյ կենարարին[28], ճաշակեալ... հաց եւ ջուր եւ աղ» = Խոսր. «հաղորդին համօրէն հաւատացեալք կենդանա-

---

[28] Ղ. Փարպեցի պիտի արտայայտուէր. «հաղորդեալ... ի պատուական խորհրդոյն մարմնոյ եւ արեան» (էջ 71):

բար եւ մեղսաճաւիչ խորհրդոյն... *եւ ապա* ճաշակեն *ի լուծական կերակուրն»*:

*Այս տեղիքները կը թելադրեն ընդունիլ թէ Յառաջաբանին հեղինակը թէ չէ Խոսրով գոնէ անոր ձեռին ազդեցութեան տակ կը գտնուի: Յամենայն դէպս Խոսրով ծանօթ չէ Տեսիլքին. այլապէս երբ խօսի պահք պահողներու՝ Գրիգոր Լուսաւորչի եւ Բարսղի անունները կը յիշէր, պիտի յիշէր անոնց թուին մէջ նաեւ զՍահակ:*

*Սահակայ Տեսիլքին աղերսը Խոսրով վարդապետի հետ ուշագրաւ է այնու, որ ի շարս հայ պատմագիրներու կը յիշուի «Խոսրով եւս Թարգմանիչ, որ է պատմութիւն սրբոյն Սահակայ հայրապետին[29]»:*

*Ինձ կը թուի թէ Խոսրով Թարգմանիչս նոյն է Խոսրով վարդապետի կամ «քահանայի» հետ, որ եւ կոչուած է Խոսրովիկ Թարգմանիչ, եւ ծաղկած Ը. դարու առաջին քառորդին, եւ իրեն վերագրուած «Պատմութիւն սրբոյն Սահակայ հայրապետին» ոչ այլ ինչ է, բայց եթէ Ղ. Փարպեցւոյ վերագրուած Ա. Դրուագը: Այս մասին պիտի խօսիմ ընդարձակ այլուր:*

---

[29] *Էջմ.*, *Թ.* 2271, *Թղ.* 218*ա*, *յամէ* 1724. *նոյնը հրտ. Ազգարար*, *Մադրաս*, 1795, *էջ* 188 = *Գալէմքեարեան*, *Պատմ. հայ լրագրութեան*, *էջ* 206: *Խոսրով պատմիչս կը յիշէ նաեւ Կիրակոս Գանձակեցի*, *էջ* 3, 16: *Խոսրովի՞ գործն է այն*, *որ կը յիշուի Սոփերք Հայկականք*, *Ե.*, 37 *իբր «Կատարեալ պատմութիւն Սահակայ եւ Մեսրոպայ» (հմմտ. առ այս Նորայր Բիւզանդացի*, *Կորիւն վարդապետ*, *էջ* 10, *ծան.*:

# ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼԼԻՔ

2, 1 կարդա՛ յաւակնութեամբ։
2, 29 կարդա՛ կ՚ըսէ Սահակ,
13, 19 Տր. Յովհաննէս Մայրագոմեցի, իբր 650ին, առաջինն է, որ կը յիշէ Տեսիլս յանուն Սահակայ, երբ կը գրէ իր «Վերլուծութիւն կաթողիկէ Եկեղեցւոյ» խորագրուած գրուածքին մէջ (Շողակաթ, Վաղարշապատ 1914, էջ 133). «Իսկ սուրբ սեղանն զսրբոյ Երրորդութեանն ծանուցանէ մեզ զմիասնականութիւնն, որպէս սուրբն Սահակ ուսուցանէ Տեսլեամբն։ Իսկ ծածկեալն ողեատուք արժանաւորաւք, այս ծածկեալ խորհուրդ բստ ինքեան արժանի սուրբ Երրորդութեանն, որ եւ այս ցուցաւ ի Տեսլեանն սրբոյն Սահակայ։ Իսկ պսակն՝ այս անդուգական պատիւ սուրբ Երրորդութեանն։ Իսկ նուիրանոցք արծաթիէ սրբոյ սեղանոյն՝ այս բանք Տեառն, ընտրեալ եւ փորձեալ որպէս զարծաթ, որպէս կանխաւ մարգարէն եւ յետոյ սուրբն Սահակ ցուցանէ»։ Յովհ. Մայրագոմեցի մեկնող հրեշտակի մասին որ եւ է խօսք չ՚ըներ. Տեսիլն եւ անոր Մեկնութիւնը կը վերագրէ Սահակայ. ասկէ կը տեսնուի թէ Տեսլեան Ա. Խմբագրութիւնն ունեցած է անիկա աչքի առաջ։ Ընդգծուած բառերը Տեսիլքէն եւ անոր Մեկնութենէն առնուած են։
14, 1. Իբր 745ին գրուած է Վահան Գողթնեցւոյ վկայաբանութիւնը. գրիչն Արտաւազդ առաջնորդ Երաշխաւոր վանքին յԱրծկէ ունի հոս ակնարկութիւն մը.

«Որպէս յայնժամ, նոյնպէս և այժմ մեզ՝ ճանապարհքն Սիովնի սգան. զի ապականեալ բարձա՛ւ լոյս պայծառապարզութեան սուրբ սպասուց և զարդուց եկեղեցեաց...: Վասն զի մրրիկ տագնապանի տխրաբեր շնչեալ օդոյն հարաւոյ՝ բարձ զառաքաստն փափկութեան. բարձեալ զպատուականութիւն և զսրբութիւն յուսադարդափայլ ծածկութեան, որ փոխանակ զբախտին շնորհեցաւ մեզ ի կենաց փայտէ Քրիստոսի. և յայտնեցաւ թխութիւն թանձրութեան կռաւոյն. խաւարագգած թանձրութիւն անհնարին սևութեանս, զո՛յն, որ ունելոց էր զամենայն աշխարհս Հայաստան երկրիս. որպէս յառաջագոյն երևեալ ի Տեսլեան երանելի և մարգարէաշնորհ առնն Աստուծոյ սրբոյն Սահակայ, յաւէտ խնամոց հովուին բանաւոր հօտի և վերադիտողի աշխարհիս Հայոց» (Սոփերք, ԺԳ. [Վենետ. 1854], էջ 13):

«Սրբոց վարդապետացն Հայոց Մովսիսի և Դաւթի Հարցմունք ընդ Երկաբնակս» գրուածին մէջ. «Յաւուրս յայսմիկ բարձեալ էին սուրբ հարքն յաշխարհէս և սակաւ ինչ աւուրս յառաջ սուրբն Սահակ և Մեսրոպ հրաժարեալ յաշխարհէս և զՏեսիլն ընկալեալ ի հրեշտակէն ի Վաղարշապատ քաղաքի, գնուացել թագաւորութեան և հայրապետութեան և զզարձեալ նորոգել զհայրապետութիւն և զթագաւորութիւն, զի չև էին արհամարհեալք». Հանդ. Ամս. 17 (1903), 153:

Այս գրուածքը երևան եկած կ'երևայ Ժ. դարու կէսին. ծանօթ է անոր Ստ. Ասողնիկ:

21, 2 *Վարդան Պատմիչ նաեւ այլուր, Գրիգորիս Վկայասէրի, Գրիգոր եւ Ներսէս կաթողիկոսներու նուիրած Ներբողեանի մէջ, կ'անդրադառնայ Տեսիլքին, երբ կը գրէ. «Որք առ ինքեանս ձգեցին զՏեսիլ սրբոյն Սահակայ եւ զգեցան զնափորան ծալեալ ի վերայ սրբոյ սեղանոյն, արժանապէս հաղորդելով հացին սրբութեան եւ ողկուզին օրհնութեան, գրեալք զոսկեղէն մատեանն ի մաքրափայլ մագաղաթս սրտից իւրեանց որպէս եւ զանուանս ի գրութիւն կենաց, ի բաց պատառելով ի յազգէս Հայաստանեայց զնախատինս ջնջագիր կարգին եւ ապազուն խորշակահար ստոցն ձիթենեաց» (Երուսաղէմ, Թ. 97, Թղ. 329ա):*

21, 7 *Կ'արժէ յիշել հոս ինչ որ կը պատմէ Կիրակոս Գանձակեցի (էջ 185), Դաւիթ Գառնեցի բանդագուշողի մասին, «զի այսպէս ասէր նա յառաջ ժողովրդեան, թէ յԱրշակունեաց ազգէն եմ ես, եւ պարտ է որդւոց իմոց՝ միայն լինել թագաւոր եւ միւսոյն կաթուղիկոս. եւ սրբոյն Սահակայ Տեսլեանն մարթ է ի վերայ նոցա կատարել»: Նոյն բանդագուշանքն արտայայտած է նաեւ Յովհաննէս եպիսկոպոս, ինչպէս կը գրէ Զաքարիա Սարկաւագ Ա. խղ. «Եւ զայս եւս էր ասացեալ դեւն, թէ դու Լուսաւորչի ցեղէն ես, այս ինքն Արշակունի, եւ յազգէն քո պարտ է լինել՝ միայն կաթողիկոս եւ միայն թագաւոր. եւ ապա լինել վերջ աշխարհի»:*

22, 4 կարդա՛ *միայնակեաց* 1442*ին*

22, 5 կարդա՛ *ակնարկելով*

29, 10 կարդա՛ *կրնայ*

32, 25 *Հմմտ. Յաւելուած յէջն* 37:

37, 1 վարէն *Զարմանալի են արդարեւ Ն. Ադոնցի այս հապճէպ, անզգոյշ հաստատումները: Տեսլեան ակնարկութիւնները՝ «զի լուեցէ մերձ ընդ մերձ թագաւորութիւն յազգէդ Արշակունեաց» եւ «մերձ յերեւումն պղծոյն անապատի դարձեալ յառնէ թագաւոր յազգէդ Արշակունեաց», գուշակութիւններ են Ե. դարու առաջին 30ամեակին հայոց. որոնք կատարուեցան 409ին եւ 420ին մահուամբ Վռամշապուհի եւ գահակալութեամբ Արտաշէսի: Տասնամեայ դատարկութիւնը գահին անյիշատակ մնացած է Ղազար Փարպեցւոյ Ս. Դրուագին մէջ. այս պատճառաւ ալ յետագայ սերունդի մէջ յեղյեղած է յոյսը, թէ պիտի ծագի օր մը, երբ Արշակունի գահը պիտի վերականգնի: Թերեւս այս յուսով օրօրած ըլլայ նաեւ այն Մոնոգոնը, որ 772ին «տեսիլս սուտս» կը համբաւէր եւ ժողովուրդը յապստամբութիւն կը գրգռէր արաբական դրօշին դէմ: Այժմ, Վասիլ կայսեր գահակալութեան առթիւ, նոյն յոյսերը արծարծած են միւսանգամ հայ մտքերու մէջ, այնու որ Վասիլ մօր կողմէ հայ էր: Սահակի Տեսիլքի խօսքերը «յառնէ թագաւոր յազգէդ Արշակունեաց» Վահան եպիսկոպոս մերձեցուց Վասիլ կայսեր, անշուշտ սուտակապասութեամբ, եւ Փոտ այս պարագան շահագործեց ցոյց տալու համար Վասիլի ծագումը Արշակունի տունէն: Այս մասին բացայայտ են Վարդան Պատմիչի տողերը, որոնք յեցած են անշուշտ գրաւոր աւանդութեան մը վրայ. Վարդան կը գրէ. Վահան ոմն եպիսկոպոս Տարօնոյ առէր նմա (Վասիլ կայսեր), թէ*

Արշակունի իցէ. զի մայրն հայ էր. եւ կատարել թուէր Տեսլեանն Սահակայ որոյ՝ նստել թագաւոր Արշակունի» (տե՛ս վերը, էջ 20)։ Ուստի հայ մը, Վահան եպիսկոպոս, հրապարակի վրայ դրած է Տեսլեան խօսքերը. եւ ոչ թէ Փոտ ինքնին ի մտաց հնարած է։ Կոստանդին Ծիրանածին ի լրոյ գրի առած է ինչ որ խօսակցութեան առարկայ եղած է 875ին արքունիքի մէջ։

44, 50—57 Մագաղաթի վրայ գրուած են տողեր ոսկեղէր գրով։ Հազուադէպ է հնոց քով սպիտակ մագաղաթի վրայ ոսկեգիր գրչութիւն. հոս սակայն քանի մը տողի վրայ է խօսքը։ „Goldschrift auf weißem Pergament scheint seltener, bzw. jünger; sie ist in Karolingischer Zeit üblich «ուստի իբր. Թ. դարուն» L. Eberhard Nestle's Einführung in das Griechische Neue Testament, vierte Auflage von E. von Dobschütz, Göttingen 1923, էջ 38։

53, 23 կարդա՛ գծագիկն) Ծիրանւոյն»։

59, ծ. 19, տ. 3 կարդա՛ պիտի ծնի Ներսէս։ Հմմտ. Փաւստոս Դ. 3 (ի վերջն) «Վասն նորա իսկ ասացեալ էր ի Տեսլեանն Աստուծոյ առ Յուսիկ, եթէ այր լինելոց է ի սորա զաւակէ, որ լիցի լոյս աշխարհի»։

61, 14 է կարդա՛ են։

---



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԼԲ. Ֆասմէր Ռ., *Հայաստանի Ոստիկաններու ժամանակագրութիւնը 833—887 տարիներու շրջանին։ Թրգմ. Հ. Վ. Ինգլիզեան։* 1933։ էջ 120։
գ. Փր. 3.—

ՃԼԳ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ Վարդապետ եւ իւր Պատմութիւնն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն։ Հատոր Ա.* 1932։ էջք ԺԲ + 399։
գ. Փր. 4.—

ՃԼԴ. Ակինեան Հ. Ն., *Դասական հայերէնն եւ Վիեննական Մխիթարեան Դպրոցը։* 1932։ էջ 387։
Ֆր. 4.—

ՃԼԵ. Ակինեան Հ. Ն., *Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան. կեանքն եւ գրական գործունէութիւնը. մատենագրական ուսումնասիրութիւն։* 1933։ էջ 280։ *Մէկ պատկերով։*
Ֆր. 3.—

ՃԼԶ. Տաշեան Հ. Յ., *Հայ ազգի տարագրութիւնը գերմանական վաւերագիրներու համեմատ։ Մասն Ա.* 1921։ էջ Ժ + 241։
Ֆր. 3.—

ՃԼԷ. Տաշեան Հ. Յ., *Հաթեր եւ Ուրարտեանք. մատենագիտական ուսումնասիրութիւն։* 1934։ էջք Ը + 343։
Ֆր. 3.—

ՃԼԸ. Սարուխան Ա., Ա. *Ֆիրդուսի եւ Մովսէս Խորենացի։* Բ. Firdowci et l'influence iranienne dans la littérature géorgienne. 1936։ էջք 62 + 63—106։
Ֆր. 1.—

ՃԼԹ. Ակինեան Հ. Ն., *Մովսէս Գ. Տաթեւացի Կաթողիկոս Հայոց յէջմիածին եւ իւր ժամանակը* (1577—1633)։ *Նպաստ մը Հայոց Եկեղեցւոյ պատմութեան։* 1935։ էջ 450։
Ֆր. 4.—

ՃԽ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ վարդապետ եւ իւր Պատմութիւնն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն։ Հատոր Բ.* 1936։ էջ 400—800։
Ֆր. 4.—

ՃԽԱ. Ակինեան Հ. Ն., *Սիմէոն դպրի Լեհացւոյ Ուղեգրութիւն։ Նկարագիր ուղեւորութեան ի Լվովէ ի Կ. Պոլիս, ի Հռոմ, ի Մուշ եւ յԵրուսաղէմ յամսն* 1608—1619։ 1936։
Ֆր. 4.—

ՃԽԲ. Էսապալեան Հ. Պ., *Տատիանի Համաբարբառը եւ հայերէն աւետարաններու առաջին թարգմանութիւնը, Վիեննա* 1937, էջք Ը + 127։
գ. Փր. 1.—

ՃԽԳ. Սարուխան Ա., *Բելգիա եւ Հայերը, Վիեննա* 1937, էջք Ը + 253։
գ. Փր. 3.—

ՃԽԴ. Թորգոմեան Դկտ. Վ., *Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ պատմութիւն, հտ. Գ.* Վիեննա 1938, էջք ԻԸ + 194: գ. Փր. 3.—

ՃԽԵ. Ակինեան Հ. Ն., *Մատենագրական հետազօտութիւններ. հտ. Դ.* Վիեննա 1938, էջք Ժ + 406: գ. Փր. 4.—

ՃԽԶ. Սարուխան Ա., *Վրաստան եւ Հայերը, հտ. Ա.*, Վիեննա 1940, էջք Ը + 291: գ. Փր. 4.—

ՃԽԷ. Էսապալեան Հ. Պ., *Դիոնիսիոս Բարսալիբի, ասորերէնէ թարգմ.*, Վիեննա 1939, էջք 112: գ. Փր. 1.—

ՃԽԸ. Երեմեան Ա., *Թիփլիսի Հայոց Պանթէոններում* Վիեննա 1940, էջք Դ + 112: գ. Փր. 1.—

ՃԽԹ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Վասպուրական-Վանի վանքերը. հտ. Ա.* Վիեննա 1940, էջք + 384: գ. Փր. 5.—

ՃԾ. Աբեղեան Դկտ. Ա., *Դորպատի հայ ուսանողութիւնը*, Վիեննա 1942, էջք 44: գ. Փր. 1.—

ՃԾԱ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Վասպուրական-Վանի վանքերը. հտ. Բ.* Վիեննա 1942, էջք Ժ + 350: գ. Փր. 5.—

ՃԾԲ. Ինգլիզեան Դկտ. Հ. Վ., *Հայաստան Սուրբ Գրքի մէջ*, Վիեննա 1947, էջք ԽԷ + 233: գ. Փր. 4.—

ՃԾԳ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Սարդիկէի ժողովքի հայերէն կանոնները*, Վիեննա 1945, էջք Հ + 132: գ. Փր. 4.—

ՃԾԴ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Սեբաստիայի վանքերը: Ա. մաս. Սեբաստիա քաղաքի վանքերը:* Վիեննա 1946, էջք ԺԱ + 79: գ. Փր. 2.—

ՃԾԵ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Վասպուրական-Վանի վանքերը. հտ. Գ.* Վիեննա 1947, էջք Է + 743—1134: գ. Փր. 5.—

ՃԾԶ. Տաշեան Հ. Յ., *Հին Հայաստանի արեւմտեան սահմանը՝ Փոքր-Հայք եւ Կողոփենէ (Սեբաստիա):* Վիեննա 1948, էջք Ը + 492: գ. Փր. 6.—

ՃԾԷ. Ակինեան Հ. Ն., *Տեսիլ Ս. Սահակայ. մատենագրական-պատմական քննութիւն:* Վիեննա 1948, էջք Ը + 93: գ. Փր. 1.—

*Հասցէ՝*

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ԳՐԱՎԱՃԱՌԱՆՈՑ**

*Librairie des Pères Mechitharistes*

*Vienne VII/62, Mechitaristengasse 4 (Autriche)*

